# ԼԵՆԻՆ

*(Հատված)*

*ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ*

Դասակարգը
Դար դարի հետևից
Ներտել է Իլյիչին:
Դասակարգը
Դար դարի հետևից
Հյութեր է նյութել:
Անգամ ջրկիրը Տիբեթի
Տվել է Իլյիչի ուղեղին
Մի թել:
Թել-թել,
Նյարդ նյարդի հետևից,
Նյարդից թե քո,
Թե իմ —
Առել է դասակարգը,
Տվել է Լենինին:
Թել-թել,
Նյարդ նյարդի հետևից
Հյուսել է
Բարդ
Կանվա:
Եվ հիմա,
Իլյիչը
Վախճանվա՞ծ...
Մեռա՞ծ կամ,
Կամ չկա՞.
Չէ՛, պրոլետար,
Իլյիչը իմ մե՛ջ է,
Քո մե՛ջ է.
Նրա մեջ է,
Իլյիչը կա՛.
Կա դասակարգը:
Դասակարգը —
Պարգել է Լենինին իբրև դեմք:
Դասակարգը հակադրել է հենին—
Իր
Լենինին:
Ու կպարզե հենին —
Լ ե ն ի ն ի զ մ:

# ՊԻՈՆԵՐՆԵՐԻՑ՝ ՄԵԾ ԻԼՅԻՉԻՆ

*Վ. ԴԱՎԹՅԱՆ*

Մենք դեռ չէինք ծնվել այս աշխարհի վրա,
Բայց դու վճռել էիր արդեն մեր բախտը մեծ,
Քո անունն է անգին մեր դրոշին գրված,
Քո պատկերն է, Իլյի՛չ, մեր ջերմ սրտերի
մեջ:

Մենք դեռ չէինք ծնվել այս աշխարհի վրա,
Բայց դու կարծես շոյել ու գուրգուրել ես մեզ,
Ու մեր կրծքին փայլող փողկապն այս
հուրհրան
Քո հայրական ձեռքով դու ես կապել
կարծես...

Թեկուզ չէինք ծնվել մենք աշխարհի վրա,
Երբ մարտնչում էիր դու մեծ գործի համար,
Սակայն մենք կդառնանք քո զինվորները քաջ
Ու նույն գործի համար կմարտնչենք՝ անահ...

Մենք դեռ չէինք ծնվել այս աշխարհի վրա,
Երբ դու վճռել էիր արդեն մեր բախտը մեծ,
Քո անունն է անգին մեր դրոշին գրված,
Քո պատկերն է, Իլյի՛չ, մեր ջերմ սրտերի մեջ:

Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ




№ 4
ԱՊՐԻԼ
1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՆՎԻՐԱԿԱՆ, ԱՆՈՒՆ

Այս խաղաղ կյանքը, այս դպրոցը, որտեղ ուսում ես առնում դու, այն գործարանը, որտեղ հրաշքներ է գործում քո հայրը, այն մեքենաները, որով հերկում են մայր հողը... այս բոլորը, բոլորը իրենց կյանքի գնով նվաճել են մեր հայրերն ու եղբայրները, մայրերն ու քույրերը. այս բոլորը տվել են մեզ աշխատավոր մարդիկ՝ բանվորներն ու գյուղացիները, որոնք 1917 թվականի հոկտեմբերին ելան մարտնչելու ժողովրդի ազատության ու բախտավոր կյանքի համար: Այդ օրերին նրանց պայքարի էր տանում փառապանծ Կոմունիստական պարտիան, նրանց դեպի լուսավոր կյանքի հեռուներն էր առաջնորդում հանճարեղ Լենինը:

Դեռ երիտասարդական հասակից նա ճաշակել է կյանքի դառնությունները, եղել է բանտերում, աքսորում և տարագրության մեջ: Բայց միշտ էլ մնացել է աննկուն, այդ ամենահասարակ, բայց և ամենաիմաստուն մարդն աշխարհում: Եվ ահա, Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի տարիներին ժողովուրդը քայլ առ քայլ գնաց իր առաջնորդի, իր ազատարարի, իր անզուգական Իլյիչի հետևից: Լենինը նրան ցույց տվեց երջանիկ ապագայի համար պայքարելու ճշմարիտ ուղին: Լենինը կռեց ու կոփեց բանվորների և գյուղացիների դաշինքը, որպեսզի նրանք երկրի իսկական տերերը դառնան: Լենինը ցույց տվեց, որ նրանք են կյանքի բոլոր բարիքների ստեղծողը:

Լե՜նին...

Նա իր ամբողջ կյանքը առանց մնացորդի նվիրեց աշխատավոր մարդկությանը: Նա ծնվեց գարնանային մի առավոտ և մշտադալար գարուն պարգևեց քեզ, պատանի բարեկա՛մ: Լենինն էր, որ հիմնեց ու բարձրացրեց անառիկ ամրոցի՝ Սովետական Միության հոյակապ շենքը: Լենինն էր, որ ղեկավարեց մարտերը գազազած թշնամիների դեմ, երբ նրանք հարձակվեցին երիտասարդ Սովետական ռեսպուբլիկայի վրա, նրան խեղդելու և բռնության լուծը թոթափած ժողովուրդներին իրենց ստրուկները դարձնելու համար: Այդ նա էր, հարազատ Լենինը, որ 1922 թվականին մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդներին միացրեց մի մեծ ընտանիքի մեջ՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ, միաձույլ եղբայրության մեջ:

Անցել են տարիներ: Մեր Հայրենիքը դարձել է լույսերի ծով: Գիտե՞ս արդյոք, պատանի լենինյա՛ն, որ այդ լույսն ու պայծառությունը տվել է Լենինը: Հայրենիքը դեռ բուժում էր մարտերում ստացած իր վերքերը, երբ աշխարհով մեկ հնչեց Լենինի կանչը էլեկտրիֆիկացիայի մասին: Եվ ինքն առաջինն էր, որ կազմեց առաջին էլեկտրակայանները գործի դնելու ծրագիրը: Այդ օրվանից մեր երկիրը ծածկվեց հազարավոր էլեկտրակայանների ցանցով:

Հայրենիքի անսահման տարածություններում հիմա գիշեր ու ցերեկ հնչում են մեկ միլիոնից ավելի տրակտոր և շատ ուրիշ հրաշագործ մեքենաներ: Գիտե՞ս արդյոք, որ դա Լենինի երազանքն է դարձել իրականություն: Այն ժամանակ, Սովետական իշխանության առաջին տարիներին, Լենինը երազում էր տալ երկրին հարյուր հազար տրակտոր: Իսկ հիմա միլիոնավոր մեքենա-

ներ են տալիս գյուղին մեր հազարավոր գործարանները: Դա մի վիթխարի ուժ է, որը մարդուն կօգնի ծովի պես բերք ստանալու, առատություն ստեղծելու գործում: Լենինի ծրագրով հետագայում ստեղծվեցին բազմահազար կոլեկտիվ տնտեսությունները և սովխոզները:

Ամեն մի լավ գործ մեր երկրում, ամեն մի նոյակապ կառուցում Լենինի անունն է կրում: Լենինի փառավոր անունն է պատվով կրում ռևոլյուցիայի օրրան հերոս քաղաքը՝ Լենինգրադը: Տասնյակ հազարավոր հերոսների կրծքին շողշողում է Հայրենիքի բարձրագույն պարգևը՝ Լենինի շքանշանը:

Սովետական ժողովուրդը Լենինի դրոշով, Հայրենական Մեծ պատերազմի ծանր տարիներին կրծքով պաշտպանեց երկրի ազատությունն ու անկախությունը: Սովետական ժողովուրդը Լենինի դրոշով է կառուցում իր նոր կյանքը: Կոմունիստական պարտիան անշեղորեն ընթանում է Լենինի գծած ուղիներով և մեր ժողովրդին տանում դեպի կոմունիզմ:

Սովետական Միությունն այժմ դարձել է հզոր արդյունաբերության և առաջավոր գյուղատնտեսության երկիր: Ամեն տարի կառուցվում են հսկայական հիդրոկայաններ, գործարաններ, թատրոններ, դպրոցներ, մշակվում են միլիոնավոր հեկտար նոր հողեր: Սովետական մարդիկ բարելավում են իրենց կյանքը, դառնում ավելի ուրախ ու երջանիկ:

Եվ այս բոլոր վիթխարի գործերը գլխավորում է մարտերում կոփված Կոմունիստական պարտիան, որն աներեր գնում է Լենինի նշած ճանապարհով:

Սովետական Միությունն այժմ փարոսն է խաղաղության: Եվ այդ փարոսի լույսը վառել է Լենինը:

Լե՜նին...

Կա՞ աշխարհում մի անկյուն, որտեղ աշխատավոր մարդը սրտի թրթիռով չարտասանի այս նվիրական անունը: Թշնամիներն անգամ գլուխ են խոնարհում նրա իմաստության, նրա հանճարի առաջ:

Ծնվում է նեգրը, մայրը նրան ամենից առաջ Լենինի անունն է սովորեցնում. իր առաջին բառերն է թոթովում չին մանկիկը, մայրը նրան ջերմորեն ժպտացող Իլյիչի նկարն է ցույց տալիս և խորին հուզմունքով ասում:

— Լե՜նին...

Պարզում է շեղաչ մանկիկն իր թաթիկները դեպի նկարը և կրկնում այդ նվիրական անունը.

— Լե՜նին...

Եվ ինչ գույն էլ ունենա մարդն աշխարհում, ինչ լեզվով էլ խոսի նա, Լենինի անունը հարազատ է բոլորին, սիրելի ու նվիրական:

Եվ որքա՜ն պարզ ու իմաստալից է ասել իր ուսուցչի մասին Լենինի գործի մեծ շարունակողը՝ Ի. Վ. Ստալինը.

«Հիշեցեք, սիրեցեք, ուսումնասիրեցեք Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին»:

Հոկտեմբերյան մարտերի հերոսների արյունով ներկված դրոշի մի մասնիկն է ծածանվում քո կրծքին, պիոնե՛ր: Լենինի անպարտելի դրոշի մի մասնիկն է զարդարում քո կուրծքը, պիոնե՛ր: Բարձր պահիր այդ դրոշը, ինչպես Լենինն էր պահում: Եղիր համեստ, աշխատասեր, հոգատար, Հայրենիքի և իսկական ընկերոջ համար կյանքդ չխնայող, ինչպես Լենինը: Եղիր խիզախ, արդարամիտ և գիտուն, ինչպես Լենինը: Եղիր լայն հոգու և բոցավառ սրտի տեր, ինչպես Լենինը: Հիշիր Լենինի պատգամը՝ «Սովորել, սովորել, սովորել» և հաստատ քայլերով ընթացիր դեպի գիտության բարձունքները: Կոփիր քեզ և դարձիր Կոմունիստական պարտիայի գործին մինչև վերջին շունչը նվիրված մարտիկ:

Այդպիսին էր Լենինը:



# ԽԱՓԱՆԵՆՔ ԱՏՈՄԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Ն. ԶԱՐՅԱՆ

(Խաղաղության Պաշտպանության Հայկական ռեսպուբլիկական կոմիտեի նախագահ)

Ամերիկայի Միացյալ Նահանգների, Անգլիայի ու Ֆրանսիայի իմպերիալիստները մարդկության դեմ պատրաստում են ամենամեծ ոճիրը՝ ատոմային պատերազմ:

Նրանք որոշել են վերականգնել գերմանական ռազմական ուժը, ջերմամիջուկային ռումբերով զինել հիտլերյան գեներալներին. ուժեղացնում են սպառազինությունների մրցավազքը, մասսայական ոչնչացման զենքի նոր պաշարներ են ստեղծում:

Նորից ուժեղացել է միջազգային հարաբերությունների լարվածությունը, նորից խտացել են փոթորկալից ամպերը մարդկության հորիզոնի վրա: Բայց խաղաղության ուժերը հզոր են: Նոր պատերազմը խափանելու գաղափարը գնալով ավելի խորն է թափանցում ժողովուրդների մեջ: Գնալով ընդարձակվում է խաղաղության կողմնակիցների համաշխարհային շարժումը: Այդ պատմական հուժկու շարժումն արդեն տվել է իր առաջին պտուղները: Մարդկության մեկ երրորդ մասը ստորագրեց Ստոկհոլմի կոչը, որի նպատակն էր արգելել ատոմային ռումբի գործադրությունը: Եվ ամերիկյան գեներալները չհանդգնեցին Կորեայում գործադրել մասսայական ոչնչացման այդ հանցավոր զենքը:

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բյուրոն այս տարվա հունվարի 19-ին Վիեննայում հրապարակեց նոր կոչ, որի նպատակն է խափանել մարդկության դեմ ջերմամիջուկային կործանարար զենքը գործադրելու հրեշավոր մտադրությունը և կանխել նոր պատերազմը:

Չինաստանում, Իտալիայում, Ավստրիայում, Հունգարիայում, Ռումինիայում, Չեխոսլովակիայում, Ինդոնեզիայում և այլ երկրներում միլիոնավոր մարդիկ ստորագրում են այդ կոչը:

Խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեն մարտի 8-ի իր նիստում որոշեց Սովետական Միության մեջ այդ կոչի տակ ստորագրել այս տարվա ապրիլի ընթացքում: Խաղաղության պաշտպանության Հայկական կոմիտեի ընդլայնված նիստը միաձայնու հավանություն տվեց Համաշխարհային Խորհրդի և Սովետական կոմիտեի որոշումներին: Հայ ժողովուրդն իր պատմության մեջ շատ է տեսել կործանարար պատերազմներ և լի է խաղաղությունը պաշտպանելու անսասան վճռականությամբ: Խաղաղությունը մեզ պետք է մեր երկրի արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը ավելի ծաղկեցնելու, մեր ժողովրդի բարեկեցությունն ավելի բարձրացնելու, կոմունիզմի կառուցումը առաջ տանելու համար: Մենք խաղաղասեր ենք, բայց ոչ վախկոտ: Մենք գիտենք, որ մեր Հայրենիքը հզոր է, և ունի այնպիսի ուժեղ դաշնակիցներ, ինչպիսին ժողովրդական մեծ Չինաստանը և ժողովրդական դեմոկրատիայի երկրներն են: Մենք գիտենք, որ եթե մեր կամքին հակառակ, ամերիկա-անգլիական իմպերիալիստները մեր վզին պատերազմ փաթաթեն, ապա մեր ժողովուրդը խաղաղության ամբողջ լագերի օգնությամբ կործանիչ հարված կտա պատերազմի հրձիգներին, և ջերմամիջուկային զենքի պայթյունների մեջ կմոխրանա կապիտալիստական սիստեմը, պատերազմներ, սով, մահ և ավերածություն ծնող հասարակարգը:

Մենք պատերազմ չենք ուզում:

Մենք կարող ենք և պե՛տք է խափանենք ատոմային պատերազմը:

# ՎՈԼՈԴՅԱ ՈՒԼՅԱՆՈՎ

(Հիշողություններ Վ. Ի. Լենինի մանկական և պատանեկան տարիների մասին)

Ն. ՎԵՐԵՏԵՆՆԻԿՈՎ

Նկ. Ա. ԴԱՎԻԴՈՎԱՅԻ

*Ես ձեզ կպատմեմ այն հեռավոր ժամանակվա մասին, երբ մեր մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը փոքրիկ տղա էր։*

*Ինձ բացառիկ բախտ է վիճակվել. ես ականատես եմ եղել Վլադիմիր Իլյիչի մանկության ու պատանեկության, նրա հետ խաղացել ու զվարճացել։ Լենինի մայրը՝ Մարիա Ալեքսանդրովնա Ուլյանովան և իմ մայրը հարազատ քույրեր են։*

*Վոլոդյա Ուլյանովը ծնվել և մինչև գիմնազիան ավարտելը ապրել է Սիմբիրսկում, Վոլգայի ափին։ Այժմ այդ քաղաքը կոչվում է Ուլյանովսկ։*

*Ուլյանովների ընտանիքն ամեն ամառ մեկնում էր Կոկուշկինո գյուղը։ Ամառն անցկացնելու համար Կազանից այդտեղ էր գնում նաև մեր ամբողջ ընտանիքը։*

*Շատ տարիներ են անցել այդ ժամանակներից, բայց Վոլոդյայի հետ կապված իմ հիշողություններն այնպես թարմ են, այնպես վառ, որ թվում է, թե այդ ամենը հենց երեկ է տեղի ունեցել։*

*Պարզ պատկերացնում եմ միջահասակ, ամրակազմ մի պատանի։ Ուռուցիկ ճակատին թափվող խարտյաշ, փոքր-ինչ գանգուր, արտակարգ փափուկ մազեր ուներ. աչքերը շագանակագույն էին, հրացայտ, երբեմն չարաճճիորեն կկոցվում էին։ Վոլոդյան համարձակ էր, շատ եռանդուն, բայց ոչ աճապարող. երբեմն չափազանցության հասնելու չափ աշխույժ էր, սակայն դա երբեք կոպտության չէր հասնում։*

*Այդպիսին էր Վոլոդյան այն հեռավոր օրերին։ Շատ զրուցասեր էր, բայց բնավ էլ շատախոս չէր. արտակարգ սրամիտ էր ու այնքան հնարագետ, որ երբեք և ոչ մի պարագայում իրեն չէր կորցնում։*

## ՈՒՂԵՎՈՐՈՒԹՅՈՒՆ ԴԵՊԻ ՍԻՄԲԻՐՍԿ

*Մի անգամ, գարնանը, մայրս պատրաստվեց մեկնելու Սիմբիրսկ՝ Մաշա մորաքրոջ մոտ և խոստացավ ինձ էլ տանել։ Այդ ժամանակ Վոլոդյան տաս-տասնմեկ տարեկան էր, իսկ ես տասնմեկ ամսով փոքր էի նրանից։*

*Դժվար է ասել, թե ինչքան ուրախացա, որ կտեսնեմ Վոլոդյային։ Ուղղակի հրճվում էի։ Բայց ավագ եղբայրներս ու քույրերս բարկացնում էին ինձ։*

*— Եթե հյուր գնաս Վոլոդյային,— ասում էին նրանք,— ամառը նա էլ Կոկուշկինո չի գա։*

*Ես լացկան չէի, բայց այդ խոսքերի վրա բարձրաձայն լաց եղա և վճռականորեն հրաժարվեցի կյանքում առաջին անգամ նավով ճամփորդելու այդ գայթակղիչ հաճույքից ու Սիմբիրսկում կարճատև լինելուց, միայն թե ամառը չզրկվեի Վոլոդյային ընկերակցելուց։*

*Միայն այն ժամանակ, երբ մայրս միջամտեց և խոստացավ, որ մեր ուղևորությունը չի խանգարի արձակուրդների ժամանակ Վոլոդյայի գյուղ գալուն, ես հանգստացա։*

*Սիմբիրսկում Վոլոդյան ինձ դիմավորեց շատ սիրալիր։ Մենք վազվզում էինք բակում ու պարտեզում, խաղում էինք բռնոցի, պահմտոցի և այլ խաղեր։ Բայց ինձ ամենից շատ դուր էր գալիս զինվորներով խաղը։ Թղթե զինվորներ Վոլոդյան ինքն էր շինում և ներկում գունավոր մատիտներով։ Հետո նրանց բաժանում էր երկու բանակի, մեկը իր, իսկ մյուսը կրտսեր եղբոր՝ Միտյայի համար։*

*Զինվորները կանգնում էին ոտքերի վրա եղած ծալվածքի շնորհիվ։ Այդ հենածալքերը երկու բանակում էլ միևնույն չափի էին լինում, բայց տարբեր էին զինվորների և գեներալների համար։ Վերջիններիս հենածալքերն ավելի լայն էին և դրա համար էլ նրանք առավել կայուն էին։ Մարտական կարգով բանակները շարում էին մեծ սեղանի շուրջը, և սկսվում էր մարտը։ Կրակում էին սիսեռի հատիկներով՝ մատները չրթացնելով։ Սիսեռի հատիկների հարվածներից չընկնող մարտիկներին տրվում էր շքանշաններ, որ*

նկարել էր Վոլոդյան։ Որպեսզի զվարճացներ ինձ և բարկացներ եղբորը, նա, Միտյայից գաղտնի, սուր մեխերով մի քանի զինվորների հենարանները ամրացնում էր սեղանին։ Այդ զինվորները սիսեռների հարվածներից մի քիչ ծռվում, բայց չէին ընկնում. իսկ Միտյայի զինվորները և նույնիսկ գեներալները տապալվում էին։ Դա շատ էր զարմացնում Միտյային։ Նա գլխի չէր ընկնում և անչափ տաքանում էր, համառորեն ճգնելով ցած գցել հատկապես այդ չտապալվող զինվորներին։



Ամառանոցը Կոկուշկինոյում

## ՈՒԼՅԱՆՈՎՆԵՐԻ ԺԱՄԱՆՈՒՄԸ ԿՈԿՈՒՇԿԻՆՈ

Դեռևս ձմռանը մենք նամակներում պարզում էինք, թե ամառը Ուլյանովներից ով և երբ պետք է ժամանի Կոկուշկինո։ Սիմբիրսկում այն ժամանակ ապրում էին և՛ իմ մեծ եղբայրը, որ գիմնազիայի դասատու էր, և՛ քույրս, որը քաղաքային դպրոցի ուսուցչուհի էր։

Ես նամակագրությամբ կապված էի Վոլոդյայի հետ և շատ էի ամաչում իմ վատ ձեռագրի համար։ Վոլոդյան ինձ խորհուրդ տվեց, որ փոխեմ ձեռագիրս։ Ես ամենևին չեմ կասկածում, որ եթե իմ տեղը ինքը լիներ, այդպես էլ կվարվեր և ոչ մի դժվարություն նա չէր կանգնեցնի նրան։

Ուլյանովները ամեն ամառ մեկնում էին Կոկուշկինո, բայց երբեմն ոչ բոլորը միասին։

Վոլոդյայի հայրը՝ Իլյա Նիկոլայևիչը ժողովրդական ուսումնարանի դիրեկտոր էր։ Հաճախ էր պատահում, որ նա կամ երկար մնում էր Սիմբիրսկում, կամ ուսումնարանի գործով Կոկուշկինոյից մեկ-երկու օրով մեկնում էր Կազան։

Սովորաբար Ուլյանովների ժամանելու օրերին մենք արդեն գյուղում էինք լինում։ Մեր ընտանիքը մեծ էր։ Մայրս աշխատում էր որպես սղագրուհի։ Եթե նրա աշխատանքը ներում էր, ապա հենց որ փոքրերիս պարապմունքները վերջանում էին և սկսվում էին արձակուրդները, մենք տեղափոխվում էինք Կոկուշկինո։ Կազանում մնում էր միայն մեծ քույրս՝ Լյուբան, որն աշխատում էր հեռագրատանը։

Գյուղ գնում էինք կառքով։ Դեռևս մեկնելու նախօրյակին պատահում էր, որ վազում էինք բակ, նայելու, թե այնտե՞ղ է արդյոք կառապանը և անհամբերությունից այրվելով պտտվում էինք ձիերի շուրջը։

Իլյա Նիկոլայևիչը և մորաքույր Մաշան երեխաների հետ Սիմբիրսկից գալիս էին նավով, իջևանում մեզ մոտ՝ Կազանում և հետո կառքով ուղևորվում Կոկուշկինո։ Այն ժամանակ ո՛չ Կազանում կար երկաթուղի, և ո՛չ էլ Սիմբիրսկում։

Վոլոդյան սովորաբար նստում էր կառապանի կողքին և նրա հետ կատակներ անում.

— Քեռի Եփի՛մ, մտրակը որ կա, ձիերը կգնան, չէ՞։

Ընդհանրապես նա կատակներ շատ էր սիրում, դրա համար էլ գյուղացիները նրան «զվարճախոս» էին անվանում։

Մի կառապան քթախոտ էր քաշում։ Նրան հարցրին.

— Ինչո՞ւ ես քաշում։

— Սա մաքրում է ուղեղը,— ցույց տալով քթախոտի տուփը պատասխանեց կառապանը։

Քանի որ քթախոտ քաշելուց հետո մարդ փռշտում է, մի ժամանակ որևէ անմտություն լսելիս Վոլոդյան ասում էր՝ «փռշտա», այսինքն «մաքրիր ուղեղդ»։

Մենք միշտ էլ նախօրոք գիտեինք, թե Ուլյանովները որ օրը պետք է ժամանեն Կոկուշկինո և աշխատում էինք կռահել գալու ժամը։ Նրանց դիմավորելու համար մենք եր-

կու կիլոմետր ոտքով գնում էինք մինչև խաչմերուկը, պանդոկի մոտ։ Մի անգամ մենք չգուշակեցինք ժամանման պահը և այդ օրը երկու-երեք անգամ գնացինք ու եկանք։ Հանդիպելով նրանց, ամբողջ խմբով ուրախ ու զվարթ վերադարձանք տուն։

Հենց որ Ուլյանովները գալիս էին Կոկուշկինո, իսկական տոն էր սկսվում մեզ համար. օտար լեզուների պարապմունքներն ու վերաքննությունների նախապատրաստվելը մի կողմ էինք թողնում։ Մենք հրճվում և ուրախանում էինք ու ամբողջ օրը հանգիստ չէինք տալիս Իլյա Նիկոլայևիչին. կախվում էինք նրա ուսերից և ուղղակի որսում նրա յուրաքանչյուր բառը։ Մենք նրան կոչում էինք «Իլյա-և-Նիկոլայևիչ» կարծելով, որ նա երկու անուն ունի։

Նա շատ էր սիրում երեխաներին և երբեք չէր խուսափում նրանցից։ Միայն մեծերն էին զսպում մեզ՝ պաշտպանելով մեր սիրելի մարդու հանգիստը։

## ԿՈԿՈՒՇԿԻՆՈ

Գետի ոլորապտույտ ափին կանգնած էր այսպես կոչված «մեծ» կամ «հին» տունը, իսկ նրանից մի քանի մետր հեռու, ճանապարհի այն կողմը՝ ֆլիգելը[1]։ Հետագայում, 1887—1888 թվականներին Վլադիմիր Իլյիչն աքսորված ժամանակ ապրեց այդ ֆլիգելում։ Բայց ո՞վ կարող էր մտածել, որ Վլադիմիր Իլյիչը հենց այդ ֆլիգելում պետք է անցկացներ իր առաջին աքսորը։

Ֆլիգելից ոչ հեռու փռված էր փոքրիկ գյուղն իր ջրաղացով։

Կոկուշկինո գյուղի մասին հարևան գեղջկուհիներն այսպես էին ասում. «Նայում եմ ես ձեր գյուղակին ու մտածում. ի՞նչ հրաշք է դա. էդքան պուճուր է և էդքան ուրախ», նրանք կարծում էին, թե դա նրանից է, որ գյուղը գտնվում է Ուշնա գետի բարձր, գեղածիծաղ ափին։

Տան շրջակայքում, լճակը եզրանախշող ճահճում ամառային տաք երեկոներին գորտերը համերգ էին տալիս։ Ֆլիգելի կողքին գտնվող այգում և գետի ափերին, ծառերի վրա դայլայլում էին սոխակները։

Կոկուշկինոյում ամեն ինչ խարխուլ էր. մեծ տան վառարանները փչացած էին ու չէին վառվում, տան կտուրը կաթում էր, նավակը ծակծկված էր, լողարան չկար, կամուրջները փուլ էին եկել։ Միջոցներ չկային ամեն ինչ կարգին վիճակում պահելու համար։

Այս թերություններից դժգոհում էինք, բայց չէինք հիասթափվում։ Մեզ բոլորիս այն ժամանակ թվում էր, թե Կոկուշկինոյից ավելի գեղեցիկ տեղ չկա։ Եթե որևէ մեկը նոր տեղեր էր տեսել, մենք հարցնում էինք.

— Մի՞թե Կոկուշկինոյից ավելի վատն է։

— Այո... Գետ չկա... Ծառերը քիչ են...

Նույնիսկ այն, որ Կազանից քառասուն կիլոմետր գալիս էինք հողային վատ ճանապարհով, մեզ դուր էր գալիս։ Գյուղ գալով մենք տեղափոխվում էինք մի այլ աշխարհ, որը բոլորովին տարբերվում էր քաղաքի միօրինակ կյանքից ու ձանձրալի ձմեռումից։

Մեր պապը՝ Ալեքսանդր Դմիտրիևիչ Բլանկը բժիշկ էր։ Նա ապրում էր Կոկուշկինոյում և բուժում էր գյուղացիներին։ Դեռևս նրա կենդանության օրոք ընդունված էր, որ նրա բոլոր աղջիկները ժամանում էին Կոկուշկինո։ Մարիա Ալեքսանդրովնայի համար հին տան կիսավերնահարկում մի սենյակ էր նախատեսված, որն այդպես էլ կոչվում էր՝ «Ուլյանովներինը»։ Իսկ ֆլիգելը կառուցված էր մնացած չորս աղջիկների համար, որոնք ամռանը նույնպես ընտանիքներով էին գալիս։

Ամառային այդ «համագումարները» շարունակվում էին նաև պապի մահից հետո։ Այդ ժամանակ տեղավորվում էինք այսպես. մորաքույր Մաշան մայրիկիս հետ տեղավորվում էր մեծ տան անկյունի սենյակում, Իլյա Նիկոլայևիչը՝ առանձնասենյակում, ես ու Վոլոդյան՝ հարևան սենյակում։

Այդ սենյակը Վոլոդյային դուր էր գալիս նրանով, որ կարելի էր լուսամուտով ելումուտ անել։

Լուսամուտով ելումուտ անելու կարգը սահմանված էր նաև ֆլիգելում, միջանցքի մեծ սենյակում, որտեղ դրված էր թաղիքապատ եզրերով ինքնաշեն բիլիարդը։ Ճանապարհի հյուսիսային կողմից սենյակ էինք մտնում պատշգամբով, որը նայում էր ծաղկանոցին, իսկ հարավային կողմից՝ լուսամուտով, որը նայում էր մյուս ծաղկանոցին,

[1] Կից շենք։

շինած որ գետնից մինչև լուսամուտը փոքրիկ սանդուղք էր դրված։

Ամռան օրերին բիլիարդի սենյակում կենտրոնացված էր ամբողջ տան կյանքը։

Ժամը իննին անկողնուց վեր թռչելով, նախքան թեյելը, Վոլոդյայի հետ վազում էինք այստեղ։ Մեզ գրավում էր ոչ միայն բիլիարդը, որ միշտ խաղում էին, այլև այն, որ այստեղ քննարկվում էին մեր գալիք շրջագայությունները, այստեղից էինք գնում լողանալու կամ նավակներով զբոսնելու, խմբեր կազմում կրոկետ խաղալու համար, մեծ եղբայրներս նախապատրաստվում էին գնալու որսորդության, պատրաստում էին հրթիռներ և այլն։

Այստեղ մի անգամ դռան մեծության մի օդապարուկ սարքեցինք, և վազեցինք մարգագետին՝ բաց թողնելու։ Վոլոդյան նույնիսկ խորհուրդ տվեց օդապարուկի պոչից սայլակ կապել, որպեսզի քաշի։

Մեր անճոռնի օդապարուկը բաց թողնելու համար վազեվազ եկան նաև գյուղի երեխաները։ Օդապարուկը վեր սլացավ և, իրոք, մեծ ուժով քաշեց պարանը։ Մենք բռնեցինք պարանից և ուժգին թափ տվինք. օդապարուկը ջարդվեց։

## ԽԱՂԵՐԸ

Վոլոդյան սիրում էր բիլիարդ խաղալ։ Հաճախ մենք խաղում էինք պայմանով, որ տարվողը դուրս էր գալիս խաղից և դառնում դիտող։

Բիլիարդ խաղալիս Վոլոդյան ամենից շատ ինձ հետ էր պայքարում, որպես ավելի ուժեղ խաղացողի։ Մի անգամ մեր միջև այսպիսի խոսակցություն տեղի ունեցավ։

Վոլոդյան ասաց.

— Ինչո՞ւ դու ավելի լավ ես բիլիարդ խաղում, քան Վոլոդյա Արդաշևը (մորաքրոջ տղան)։

— Որովհետև,— ասում եմ,— նա քիչ է խաղում կամ այնքան էլ չի սիրում այս խաղը, ինչպես ես։

— Ո՛չ, դու չես նկատել, նա խաղաձողը ուրիշ ձևով է բռնում։

— Ճիշտ է, ես խաղաձողը բռնում եմ աջ ձեռքով, վերևից, իսկ նա՝ ներքևից։ Գուցե դրանի՞ց է... բայց ես ուշադրություն չեմ դարձրել։

Մի անգամ ես Վոլոդյային առաջարկեցի շախմատ խաղալ։ Նա այն ժամանակ արդեն լավ էր տիրապետում այդ խաղին։

— Խաղանք. բայց դու պիտի խաղաս ինչպես հարկն է,— պատասխանեց նա։— Դու չես խաղում, այլ պարզապես ֆիգուրաներ ես տեղափոխում։

Ես սկսեցի պնդել և ասացի.

— Տե՛ս, բիլիարդ ես քեզանից լավ եմ խաղում, բայց չեմ հրաժարվում։

— Դե, դա արդեն քո գործն է,— ասաց Վոլոդյան։

Իհարկե ես ոչ մի րոպե չմտածեցի հրաժարվել նրա հետ բիլիարդ խաղալուց։



Խաղում էին սիսեռի հատիկներով...

Վոլոդյան բոլոր տեսակի խաղերին վերաբերվում էր լուրջ և մտախոհ։ Նա չէր սիրում հեշտ հաղթանակներ և նախապատվությունը տալիս էր պայքարին։

Վոլոդյան և նրա քույր Օլյան կրոկետ խաղալու խիստ կարգ էին սահմանել մեզ մոտ, որ բերել էին Սիմբիրսկից (այնտեղ էլ նրանք

խաղում էին). օրինակ նրանք թույլ չէին տալիս մուրճով գնդակը երկար տանել և պահանջում էին կարճ հարվածներ։

Մարմնամարզական վարժություններով Վոլոդյան չէր հրապուրվում։ Նա աչքի էր ընկնում միայն ոտնացույցերով ման գալու մեջ։ Բայց դրանով էլ քիչ էր զբաղվում, ասելով թե Կոկուշկինոյում պետք է օգտվել այն բոլորից, ինչ չկա Սիմբիրսկում։

## ՎԱՂ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԻՑ

Կոկուշկինոյում Վոլոդյան իրեն ամբողջովին նվիրում էր հանգստի և խաղերի։ Ի միջի այլոց Սիմբիրսկում էլ, վաղ մանկության օրերից սկսած, նա շատ էր կարդում։ Գրքերը վերցնում էր գրադարանից, ուր նա գնում էր իր ավագ քրոջ՝ Անեչկայի հետ։

Մի անգամ Անեչկան կատակով ինձ ասաց.

— Կոլյա՛, Վոլոդյան քեզ պատմե՞լ է, թե ինչպես է գրադարան գնացել։

— Ոչ, չի ասել։ Ի՞նչ է եղել որ։

— Դու նրան հարցրու։ Դա հետաքրքիր է։

Վոլոդյան անմիջապես չպատմեց. հետո ու այնքան հաճույքով ասաց, որ գրադարան գնալիս, փողոցում նրան սագեր են հանդիպել, որոնց ինքը բարկացրել է։ Սագերը երկարացնելով վզները հարձակվել են։ Իսկ երբ այդ գրոհը չափազանց լուրջ բնույթ է կրել, նա պառկել է մեջքի վրա և պաշտպանվել ոտքերով։

— Իսկ ինչո՞ւ ոչ փայտով,— հարց տվեցի ես։

— Ձեռքիս փայտ չկար։ Ասենք դրանք բոլորն էլ դատարկ բաներ են, հիմարություններ։ Դե, դա եղել է մոտավորապես երկու տարի առաջ։

Արտակարգ կենսուրախ ու շարժուն Վոլոդյան երբեք չէր գժտվում ո՛չ ինձ և ո՛չ էլ ուրիշ երեխաների հետ։ Նա պարզապես հեռանում ու առանձնանում էր նրանցից, ովքեր դուր չէին գալիս իրեն։ Եվ ինչ խոսք, որ նա երբեք հասակակից երեխաների հետ տուրուդմբոց չէր սարքում. բայց և այնպես, ինչպիսի պայմաններում էլ լիներ, նա տաքտաք վիճում էր։

Վոլոդյան իրեն պահում էր շատ հասարակ և բնական. առաջ ընկնելու ոչ մի հավակնություն հանդես չէր բերում։ Ասենք, այդ առաջնությունը գալիս էր ինքնաբերաբար և դրա համար էլ ոչ ոքի չէր վիրավորում ու նախանձ առաջացնում, այլ օրինակ էր ծառայում։

Վոլոդյան անբացատրելի կերպով հմայում էր շրջապատի մարդկանց։

## ԼՈՂ

Արագ շխշխկում է ջրաղացը, բզզալով պտտվում են ճանճերը։ Հուլիսյան շոգ օր է։ Արևն ուղղակի այրում է։ Գետի կողմից գալիս են լողացող երեխաների ծիծաղն ու կանչերը։

Մեզ համար ամենամեծ բավականությունը լողանալն էր։ Լողանում էինք առավոտից մինչև երեկո։

— Վոլոդյա՛, այսօր դու քանի՞ անգամ ես լողացել։

— Երեք, իսկ դո՞ւ։

— Իսկ ես արդեն հինգ անգամ։

Կային տղաներ, որ օրվա մեջ լողանում էին մինչև տասն անգամ։

Վոլոդյան, ես և մյուս տղաներն ամենավաղ մանկությունից սիրում էինք ջրում չոփչոփ անել։ Լող տալ չիմանալով, մենք թպրտում էինք ծանծաղ տեղում, ափերի և կամուրջների մոտ, կամ տախտակներով առանձնացված հատուկ լողարաններում։ Մեծերը մեզ անվանում էին պղտոր ջրերի գորտեր։ Այդ ամոթալի և արհամարհական մականունը մեզ շատ էր վիրավորում։ Ես հիշում եմ, թե ինչպես և՛ Վոլոդյան, և՛ ես, և՛ մեզ հասակակից մի տղա սովորեցինք լող տալ։ Սովորաբար յոթ-ութ տարեկան երեխան լողալով անցնում էր նեղ գետը։ Իսկ ով առանց հանգստանալու կարողանում էր հասնել մյուս ափը և վերադառնալ, նա համարվում էր լողորդ։ Երբ փոքրիկ լողորդն առաջին անգամ լողալով անցնում էր գետը, նրան մեծերից մեկն ու մեկն ուղեկցում էր։

Սակայն լողի դասընթացները դրանով չէին վերջանում։ Մենք անընդհատ կատարելագործվում էինք։ Հարկավոր էր սովորել անշարժ պառկել մեջքի վրա, գլուխկոնծի տալ, սուզվել ջրի տակ և տիղմ դուրս բերել, լողարանի կտուրից թռչել ջրի մեջ, մի ձեռքում պահած գուլպան կամ կոշիկը, առանց թրջելու լողալով անցնել գետը։ Սովորում էինք

առանց հանգստանալու լողալ մինչև այնտեղ, որտեղ առուն թափվում էր գետը։ Այդ տեղը կոչում էինք Կանաչ Վարդերի Վտակ, քանի որ այնտեղ աճում էին ճահճային բույսեր, որոնք վարդերի նման էին։ Հաճախ գնում էինք մինչև հարևան Չերեմիշևո-Ապոկայևո գյուղի կամուրջը, իսկ դա արդեն հավասար էր մոտ մեկ կիլոմետրի։ Այս գյուղը ձգվում էր դեպի Կոկուշկինո տանող ճանապարհի երկարությամբ՝ գյուղական խրճիթների երկար շարքերով։ Գյուղի այն մասում, որն ավելի մոտ էր գտնվում Կոկուշկինոյին, բնակվում էին ռուսներ, իսկ մյուս մասում թաթարներ։ Դուցե և դա է պատճառը, որ գյուղը կրում է նաև Ապոկայևո անունը։ Ապոկայ թաթարերեն նշանակում է քույրիկ։

(Շարունակելի)

**Սովետական Ադրբեջանի 35-րդ տարեդարձի առթիվ**

# ԽՈՍՔ ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ

*Հ. ՍԱՀՅԱՆ*

Շահդաղ լեռն է դեմս նստած
Շղարշի տակ ձյունի,
Որ կարծես թե երկինք մտած
Արագածս լինի։

Հարազատ է ինձ ամեն ինչ
Հայացքի տակ նրա,
Ծառը ծաղկած, աղբյուրը չինչ,
Հավքը՝ քարի վրա,

Հարազատ են լանջերն այս թեք,
Այս ծաղկունքը ալվան
Եվ այս դաշտը, որ զմրուխտե
Շիրակիս է նման։

Մենք երգել ենք միշտ միասին,
Ու միասին պարել,
Խոսք ենք ասել իրար մասին
Եվ զրույց ենք արել։

Արբեցել ենք իրար ձայնից,
Իրար թիկունք դառել,
Ջուր ենք տարել իրար տանից
Եվ կրակ ենք տարել։

Մենք սնվել ենք տարբեր կաթով,
Ունենք տարբեր բարբառ,
Բայց կռվել ենք նույն հավատով
Եվ նույն բախտի համար։

Ադրբեջա՛ն, հարազատ հող,
Քո բուրմունքը վկա,
Որ աշխարհում մեզ բաժանող
Սահմանագիծ չկա։

Չկա ոչ մի սահմանագիծ
Եվ չի լինի երբեք,
Երբ որ ռուսի պես սրտակից
Ավագ եղբայր ունենք։

Նա փրկության օրն արևոտ
Բերեց մեր ափերին,
Որ ապրիլին բացվեց ձեզ մոտ,
Մեզ մոտ նոյեմբերին։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԴՐԲԵՋԱՆ

*ԱՐ. ՕՀԱՆՅԱՆ*

Մեծ Կովկասի լեռները հյուսիսից և Փոքր Կովկասի լեռների ճյուղերը արևմուտքից մտնելով Ադրբեջանի սահմանները, խոնարհում են իրենց ձյունազարդ գագաթները, իջնում և վերածվում մի լայնածավալ դաշտավայրի։ Ղարաբաղի, Շիրվանի ու Մուղանի հռչակավոր տափաստաններն ընկած են այդ դաշտավայրում։ Այստեղով հոսում են Քուռ ու Արաքս գետերի պղտոր ջրերը և թափվում Կասպից ծովը։

Բաքվի մոտ գետնի տակից ժայթքող գազերն այրվում էին կապտականաչ բոցերով։ Դրա համար էլ այս երկիրն ստացավ Ազերբայջան անունը, որը պարսկերեն նշանակում է «Կրակի երկիր»։

Կրոնամոլ մարդիկ լսելով հրաշք բոցերի

մասին, դարեր առաջ հեռավոր երկրներից գալիս էին այստեղ, տաճարներ հիմնում այդ «անմար կրակների» մոտ ու երկրպագում։

Կրակների երկիրը դարձավ ադրբեջանական ժողովրդի հայրենիքը։

Տասնիններորդ դարի սկզբին Ադրբեջանը միացվեց Ռուսաստանին։ Իսկ վաթսուն տարի առաջ, մեծ Լենինի կանչերը հասան Ադրբեջանի բանվորների ականջին։ Ստալինի, Շահումյանի, Ազիզբեկովի ղեկավարությամբ Բաքվի բանվորներն սկսեցին անհաշտ պայքար մղել կապիտալիստների լծի դեմ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի շնորհիվ, ռուս բանվորների օգնությամբ, Ադրբեջանը ազատագրվեց ամեն տեսակի կեղեքիչներից։ Ադրբեջանի աշխատավորները դարձան իրենց երկրի իսկական տերերը։

Ինչպիսի՜ հարստություններ ասես, որ չունի Ադրբեջանը։ Բաքվի սև ոսկին՝ նավթը, Քուռ և Արաքս գետերի էլեկտրական էներգիան, Դաշքեսանի երկաթահանքերը, շինանյութեր, դարավոր անտառներ...

Քուռ-Արաքսի լայնատարած տափաստան-



Կառավարական տունը։ Ֆոտո՝ Յ. ՇԵՎՑՈՎԻ (ՏԱՍՍ)

ներն ամառը ծածկվում են բամբակենու սպիտակ քուլաներով, Ապշերոնյան թերակղզում աճում են ոսկեգույն զաֆրանն ու սևաթույր ձիթենին, Լենքորանի դաշտում՝ թեյի թուփը, կիտրոնը, նարինջն ու մանդարինը, նուշն ու նուռը։ Ադրբեջանի կոլտնտեսային այգիներում բերքի ծանրության տակ ընկում են խաղողի վազը, դեղձենին, տանձենին, խնձորենին, ընկուզենին։ Դաշտերում ծփում են ոսկեհասկ ցորենի արտերը, արոտներում արածում բազմահազար հոտերն ու նախիրները։

Սովետական իշխանության օրոք Ադրբեջանում արագ թափով զարգացավ նավթի արդյունաբերությունը։ Բաքվի շուրջը՝ Ապշերոնյան թերակղզում սկսեցին խփել նավթի հզոր շատրվանները։ Այժմ նավթագործները փորում են հինգ կիլոմետր խորություն ունեցող նավթահորեր։ Երբ սովետական երկրաբանները Կասպից ծովի հատակում նավթի հարուստ պաշարներ գտան, ծովի ալեկոծվող ջրերում նավթի աշտարակներ կանգնեցրին և սկսեցին ծովի հատակից նավթ հանել։ Գիշեր ու ցերեկ հոսող նավթը փոխադրելու համար Ադրբեջանում կառուցվեց խողովակաշինական մի խոշոր գործարան։

Ադրբեջանը ստեղծեց նաև ծանր ու թեթև արդյունաբերության բազմաթիվ ճյուղեր։ Նրա նորակառույց գործարանները պատրաստում են հզոր մեքենաներ, քիմիական նյութեր, ցեմենտ, արտադրում են բամբակե, մետաքսյա ու բրդեղեն գործվածքներ, հագուստ, մսամթերքներ, ձկան, մրգեղենի և բանջարեղենի պահածոներ, ձեթ, և հարյուրավոր այլ տեսակի ապրանքներ։

Նավթի արտադրությամբ Ադրբեջանն առաջին տեղն է բռնում Սովետական Միությունում, իսկ բամբակի արտադրանքի չափով զիջում է միայն Ուզբեկստանին։ Բաքվի և Կիրովաբադի տեքստիլ գործարանները բամբակից տեսակ-տեսակ գործվածքներ են պատրաստում։

Իսկ ի՞նչն է ջուր տալիս բամբակի դաշտերին և էներգիա՝ Ադրբեջանի հսկա գործարաններին. նորակառույց հորդահոս ջրանցքներին։ Նրանք ոռոգում են ութ հարյուր հազար հեկտար հող։ Էներգիա տալիս են հիդրոկայաններն ու ջերմակայանները։ Դրանցից ամենահզորը Մինգեչաուրգէսն

է, որն իր ուժով զիջում է միայն Դնեպրոգէսին։ Այստեղ՝ Մինգեչաուրի մոտ սովետական մարդիկ ութսունյոթ մետր բարձրություն ունեցող պատնեշով փակեցին Քուռ գետի ճանապարհը. առաջացավ Մինգեչաուրի ծովը։ Պատնեշի մոտ խոշոր հիդրոկայան կառուցվեց։

Մինգեչաուրի ծովից հոսող ջրանցքներով Քուռ-Արաքսի դաշտավայրում կոռոգվի մեկ միլիոն երեք հարյուր հազար հեկտար հող։ Տափաստաններում կտարածվեն բամբակենու նոր պլանտացիաներ, մրգաստաններ ու պարտեզներ։



Սումգայիթի Վ. Ի. Լենինի անվան փողոցը։ Ֆոտո՝ Վ. ԵԳՈՐՈՎԻ (ՏԱՍՍ)

Ադրբեջանի քարտեզի վրա կարելի է գտնել նոր սոցիալիստական քաղաքներ Մինգեչաուրը, Սումգայիթը, Դաշքյասանը և այլն։

Օրեցօր զարգանում է նաև Սովետական Ադրբեջանի կուլտուրան։ Հարյուր հազարավոր մարդիկ սովորում են հանրակրթական դպրոցներում, տասնյակ հազարավոր ուսանողներ՝ բարձրագույն դպրոցներում ու տեխնիկումներում։ Ծաղկում են գիտությունն ու արվեստը։

Ադրբեջանի մայրաքաղաք Բաքուն, որ առաջ, ինչպես ասել է Մ. Գորկին, մռայլ դժոխքի էր նման, այժմ Սովետական Միության ամենագեղեցիկ, բարեկարգ սոցիալիստական քաղաքներից մեկն է դարձել։ Բաքուն իր բնակչության թվով Սովետական Միության հինգերորդ քաղաքն է և խոշորագույն նավահանգիստը Կասպից ծովի վրա։

Օրեցօր ծաղկում ու բարգավաճում է Սովետական Ադրբեջանը։

## ԱՊՐԻԼ

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Աչքերիդ մեջ երկինքը ծով՝
Դու լաց եղար կաթիլ-կաթիլ
Ու ժպտացիր ծիածանով,
Մեզ՝ բոլորիս ծանոթ ապրիլ։
Գարուն բուրող յասամանի
Աչիկներով պայծառ ու բիլ՝
Դու նայեցիր Երևանին,
Մանկության պես զվարթ ապրիլ։
Փարվեցիր դու խնձորենուն
Ծաղկանց ձյունով փաթիլ-փաթիլ...
Ու քո մասին աղբյուր-առու
Երգ ասացին. անուշ ապրիլ։

Արեգակի ցնցուղն առած
Առատ ոսկի շաղ տվեցիր,
Ամեն բայլիդ՝ նամփին մարդկանց
Դու ցանեցիր ծաղիկ ու ծիլ։
— Հավետ ծաղկե՛ք, իմ մանուկներ,—
Հովի ձայնով մեզ ասացիր,—
Դուք անբառամ գարունն եք մեր,
Իսկ ես՝ ծաղկող-անցնող ապրիլ։
— Դե, շտապիր, որ մեզ բերես
Հաղթանակի մայիս կարմիր,
Գնաս բարո՜վ,— ասում ենք քեզ,—
Մեր կյանքի պես սիրուն ապրիլ։

# ԴԵՊՔԵՐ ԱԹԱՐԲԵԿՅԱՆԻ ԿՅԱՆՔԻՑ

Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Նկ. Հ. ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ

## ԼՈՒՍԱԴԵՄԻՆ

Այս դեպքը պատահեց Հյուսիսային Կովկասում։

Թերեքի հովտում հորդառատ անձրև էր տեղում։ Վարարուն գետի ափերով քառատրոփ սլանում էին երկու ձիավոր, իսկ նրանց հետևից՝ մի էսկադրոն։ Առաջից գնացող փարթամ, բոց մորուքով, սև, խորաթափանց աչքերով մարդը՝ Գևորգ Աթարբեկյանն էր, մյուսը՝ նրա օգնական Մաքսիմը։ Երկուսն էլ զինված էին, իսկ գլխներին կոմունարկաներ էին դրել։

Արդեն մի տարի էր, որ Աթարբեկյանը գտնվում էր Հյուսիսային Կովկասում։ Նա այդտեղ էր եկել Լենինի ու պարտիայի հատուկ հանձնարարությամբ՝ գլխավորելու սպիտակ բանդաների ջախջախման գործը։

Նա վերադառնում էր մի շատ կարևոր օպերացիայից։ Թշնամու մի մեծ ջոկատ ձգտում էր հասնել Բաքու և այնտեղ գտնվող անգլիական զավթիչներին հանձնել կողոպտած ոսկին։ Աթարբեկյանը, որ շատ հնարամիտ ու քաջ մարդ էր, անմիջապես ջախջախեց բանդան և նրանցից ետ խլեց հափշտակած հարստությունը։

Կես գիշերին, կազակական մի խուտորում, Աթարբեկյանը որոշեց մի քիչ հանգստանալ։ Նա երկար ճանապարհ էր անցել. երկու գիշեր չէր քնել։ Էսկադրոնը տեղավորելով գյուղում, Մաքսիմի հետ որոշեց գիշերել խուտորի ծայրին գտնվող մի աննշան տնակում։ Ապահովության համար նա տնակի մոտերքում պահակներ կարգեց, բերել տվեց ետ խլած ոսկին և դառնալով Մաքսիմին՝ ասաց.

— Մաքսի՛մ Իվանիչ, խնդրում եմ հաշվեք ոսկին, կնքեք և առավոտյան ուղարկեք Մոսկվա՝ Պետական բանկ. իսկ ես ուզում եմ քիչ հանգստանալ։

— Շատ լավ,— պատասխանեց Մաքսիմը, ոսկին լցրեց սեղանին և սկսեց հաշվել։

Աթարբեկյանը ցարական բանտից ժառանգել էր թոքախտ։ Ընկերները ստիպում էին սանատորիա գնալ կամ հիվանդանոցում բուժվել, բայց նա չէր լսում և միշտ պատասխանում էր.

— Քանի չեն ոչնչացված ռևոլյուցիայի թշնամիները՝ Աթարբեկյանը գլուխը բարձին չի դնի։

Նա ծանր հազաց։ Կարմիր թծերը պատեցին ողջ դեմքը։ Նա հոգնած պառկեց թախտի վրա՝ նախօրոք հանած մաուզերը սեղանին դնելով։

Մաքսիմը հոգատարությամբ շինելով ծածկեց Աթարբեկյանին և շարունակեց իր գործը։

Աթարբեկյանը երկար ժամանակ տանջվում էր, բայց չէր կարողանում քնել։ Միայն լուսադեմին փակվեցին նրա կոպերը։ Նա կիսարթուն վիճակում էր, երբ հանկարծ պատուհանի տակ ձիերի դոփյուն լսվեց։ Աչքերը բացեց։ Աղոտ լուսաբաց էր։ Մաքսիմը դեռ հաշվում էր սեղանի վրա կուտակված ոսկին։ Նայեց սեղանին դրված մաուզերին։ Մեկնեց ձեռքը, որ վերցնի, բայց անմիջապես փոխեց միտքը ձեռքը ետ քաշեց։ Այդ պահին շրըխկոցով բացվեց պատուհանը և հայտնվեցին տասներկու կազակ, որը ատրճանակը առաջ պարզած, որը հրացանը, որն էլ արևի առաջին շողերի տակ սրերը շողացնելիս...

— Ձեռքերդ վե՛ր. անձնատուր եղեք, թե չէ՝ կրակում ենք,— գոռաց կազակներից մեկը։ Նրանք նշան բռնեցին, իսկ մեկը ավելացրեց.

— Դիմադրությունն ավելորդ է, ձեր պահակները գերված են։

Ու նա ցույց տվեց կապկպած պահակներից մեկին։

Աթարբեկյանը մի պահ զարմացավ։ «Մի՞թե մատնել են», մտածեց նա, նայեց Մաքսիմին, որը հափշտակեց մաուզերը և ուզեց կրակել։ Աթարբեկյանը բռնեց ընկերոջ ձեռքը և արգելեց։

— Ի՞նչ է, ուզում եք անձնատո՞ւր լինել,— շփոթված դժգոհությամբ հարցրեց Մաքսիմը։



...սկսեց կրակել կազակների վրա։

— Այո՛, անձնատուր,— բարձրաձայն ասաց Աթարբեկյանը՝ ըմբռնելով ստեղծված իրադրությունը։

«Փոքրիկ դիմադրությունն էլ կազակների մեջ ինքնապաշտպանության զգացում կառաջացնի և նրանք չեն խնայի», խորհեց նա և բարձրացնելով ձեռքը ուշադիր նայեց կազակներին։ Սրանք հափշտակված, ագահ հայացքներով նայում էին սեղանին լցված ոսկուն։

Աթարբեկյանը զգաց, որ դրանք ոսկով են հափշտակված, որսաց հարմար պահը, սեղանից բուռ վերցրեց ոսկին ու շպրտեց պատուհանից դուրս։ Կազակները խառը-խառը գնացին, թափվեցին գետնին շաղ տված ոսկու վրա, ամեն մեկը ձգտելով որքան կարելի է շատ վերցնել։

Հենց այդ պահին Աթարբեկյանը վերցրեց մաուզերը, ցատկեց դեպի պատուհանը և սկսեց կրակել կազակների վրա։ Նրանցից մի քանիսն ընկան տեղն ու տեղը։ Մյուսները ցատկեցին դեպի ձիերը, որ փախուստ տան, բայց բռնվեցին կրակոցի ձայնը լսած ու դեպքի վայրը շտապած էսկադրոնի հեծյալ մարտիկների կողմից։

## ԳՆԱՑՔՈՒՄ

1920 թվականի ամառն էր։ Ցարական գեներալ Վրանգելը անգլիացիների ու ամերիկացիների օգնությամբ պատրաստվում էր դեսանտ հանել Թամանյան թերակղզում, գրավել Կուբանը, առաջ շարժվել հյուսիս՝ դեպի Մոսկվա։

Այդ ժամանակ Կուբանում գործում էին ցարական գեներալ Ֆոստիկովի ավազակային խմբերը, թալանում և սպանություններ կատարում։ Նրանք ձգտում էին օգնել Վրանգելին։ Գևորգ Աթարբեկյանը, որ մեծ փորձ ուներ Հյուսիսային Կովկասում թշնամու ուժերի դեմ մղվող պայքարում, Մոսկվայից վերադառնում էր Կուբան։ Նա եղել էր Լենինի ու Ձերժինսկու մոտ, զրուցել նրանց հետ և ստացել նոր առաջադրանքներ։ Այժմ նա շտապում էր Հյուսիսային Կովկաս՝ կանխելու Թամանյան թերակղզում սպասվող Վրանգելի դեսանտի գործողությունները և ամրացնելու թիկունքը։

Գնացքը, որով մեկնում էր Աթարբեկյանը, գնում էր շատ դանդաղ։ Նա կանգ էր առնում ամեն մի կիսակայարանում, վառելիք կամ շոգեքարշ չլինելու պատճառով։ Ձանձրույթից նա կարդում էր, երբեմն էլ երգում։

— Դուք հրաշալի ձայն և լսողություն ունեք,— դիմեց նրան նույն կուպեում նստած սիրունատես, հիսունին մոտ մի մարդ.— հո երաժիշտ չե՞ք։

— Այո, մի փոքր։ Բայց երաժշտական կրթությունս շարունակել չկարողացա։ Դե, պատերա՞զմ, հետո քաղաքացիական կռիվնե՞ր...

— Ափսոս, ափսոս,—ցավակցաբար ասաց ուղևորը, որն իրեն Նիկոլայ Սիտկով անվա-

նեց.— ցավում եմ, որ էլ երբեք չեք ունենա այդ հնարավորությունը:

— Ինչո՞ւ,— զարմացավ Աթարբեկյանը:

— Դե՜, ի՞նչ ասեմ: Դուք կոմունի՞ստ եք:

— Ո՛չ, մտքովս էլ չի անցել:

— Իսկ ո՞ւր եք գնում,—շեղեց նա հարցը:

— Եկատերինոդար՝ ազգականներիս մոտ. Մոսկվայում շատ դժվար է ապրել, ցուրտ է, իսկ թոքերս էլ հիվանդ են...

— Կրկնակի ցավում եմ:

— Պատճառը՞:



— Դուք Աթարբեկյա՞նն եք:

— Այնտեղ դուք կյանք չեք ունենա:

— Պատճառը՞:

— Կընկնեք Աթարբեկյանի ձեռքը՝ և վերջ: Նա կոշտ ու կոպիտ, անգրագետ կովկասցի է:

— Մի՞թե: Իսկ ես լսել եմ, որ նա բարձրագույն կրթություն ունի և շատ է սիրում արվեստը: Մի՞թե կարելի է չսիրել Պուշկինին, Գորկուն, Տոլստոյին, Չայկովսկուն, Բեթհովենին,— ասաց նա ու սկսեց երգել ու արտասանել:

— Երիտասա՛րդ,— դիմեց խոսակիցը նրան,— անկեղծ խորհուրդ կտամ, որ չգնաք Կուբան. ափսոս եք. դուք տաղանդ եք, լուրջ տաղանդ: Աթարբեկյանը կոչնչացնի ձեզ: Սարսափելի մարդ է, անխիղճ...

Այդ պահին վագոնի մեջ զանվող մի երեխա անցավ նրանց մոտով: Աթարբեկյանը գրկեց նրան, հետո գրպանից հանեց շաքար, տվեց նրան ու ասաց.

— Ապագան սրանցն է, պետք է ամեն բան անել, որ սրանք լավ ապրեն ու էլ կռիվ, կոտորած չտեսնեն:

— Դա լավ է, երիտասա՛րդ. բայց քանի Աթարբեկյանի նման մարդիկ կան, էլ Կուբանում այդ չի լինի:

Զրույցն հանկարծ ընդհատվեց: Գնացքը կանգ առավ հանգուցային կայարանում: Պետք էր իջնել և այլ գնացք նստել:

Ուղևորները պատրաստվեցին: Նրա մոտավ տեղի Չեկայի լիազորը, որ նախօրոք ստացած հեռագրի համաձայն՝ եկել էր դիմավորելու:

— Ընկեր Աթարբեկյա՛ն, ավտոն պատրաստ է, այստեղից կարող ենք մեքենայով գնալ,— ասաց լիազորը, սեղմելով նրա ձեռքը:

Ուղևորն աչքերը լայն բացեց. լեզուն ասես կապ ընկավ. սկսեցին դողալ ծնկները: Աթարբեկյանը ժպտալով նայեց նրան: Սիտակովը կմկմաց.

— Դուք Աթարբեկյա՞նն եք:

— Այո, սարսափելի Աթարբեկյանը,— ասաց նա և ուշադրություն չդարձնելով ուղևորի վրա, դիմեց դեպի ելքը:

Սիտակովը նայեց նրա հետևից, մրմնջաց ինքն իրեն.

— Որքա՜ն չար են մարդկանց լեզուները:

# ԱՄԵՆԱԼԱՎ ԲԱՐԵԿԱՄԸ

Ա. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Հայրս հաղթանդամ ու լայնաթիկունք մարդ էր, Նորքի քարհանքերի ամենալավ քարհատը։ Եղբայրներս էլ խոշոր ու ջլապինդ երիտասարդներ էին։ Միայն ես էի, որ թուլակազմ ու նիհար էի։

Ես իմ հասակակիցներից ավելի երկարահասակ էի՝ բայց նրանցից ամենակարճլիկն անգամ կարող էր ինձ գետին գցել. դրա համար էլ վախենում էի ու, ճիշտն ասեմ՝ մեկ-մեկ էլ լաց լինում։

Այդ ժամանակ ես արդեն ինը տարեկան էի և սովորում էի երկրորդ դասարանում։ Լավ էի սովորում ու խելոք էի, բայց շատ հաճախ էի հիվանդանում ու միշտ ստիպված լինում բաց թողած դասերը մի կերպ հասցնել։

Տանը, ծնողներս շատ էին խոսում իմ առողջության մասին։

— Դպրոցից հանեք, մի տարի թող հանգստանա,— խորհուրդ էր տալիս մեր հարևան Լուսնթագը, որ մի քանի ամիս որպես մայրապետ աշխատել էր հիվանդանոցում և բժշկության հարցերում մեր բակի մեծագույն հեղինակությունն էր։

Ծնողներս կամաց-կամաց հակվում էին դեպի Լուսնթագի առաջարկը, իսկ ես այնպես էի սովորել դպրոցին, որ ոչ մի կերպ չէի կարող համաձայնել դպրոցը թողնելու մտքի հետ։ Հենց միայն այդ մտքից աչքերս լցվում էին, և ես ավելի էի կուչ գալիս։ Այդ բանն ամենից լավ նկատում էր մեծ եղբայրս՝ Հովսեփը, դրա համար էլ դեմ էր Լուսնթագի առաջարկին։

Հովսեփն ինձ բժիշկի մոտ տարավ։ Դրանից հետո մայրս ամեն օր ստիպում էր ինձ կաթ խմել, մեղր ու կարագ էր ուտեցնում, իսկ պատշգամբում, հայտնվեց մի շիշ։ Շշի վրա թուղթ էր կպցրած ու վրան գրված «Ձկան յուղ»։ Հարևան երեխաներն էլ էին դրանից խմում ու բոլոր մայրերը միաբերան հավատացնում էին, թե դա կազդուրում է երեխաներին։ Ես էլ սկսեցի կանոնավոր կերպով ամեն առավոտ մի-մի դգալ կուլ տալ շշի պարունակությունից, բայց չգիտեմ ինչու դրանից էլ բան դուրս չեկավ։

Բոլորովին անսպասելի կերպով մի անգամ մեր տուն եկավ ընկեր Մուշեղը։

Ընկեր Մուշեղը մեր դպրոցի ֆիզկուլտուրայի դասատուն էր։ Մենք փոքրիկներս դեռևս ֆիզկուլտուրայով կանոնավոր չէինք պարապում։ Չէր կարելի, իհարկե, ֆիզկուլտուրա համարել այն վազվզոցն ու աղմուկը, որով ուսուցչուհի ընկեր Աննայի հսկողությամբ մենք զբաղվում էինք շաբաթական մեկ ժամ, ձմեռը՝ դասարանում, իսկ գարնանն ու աշնանը՝ դպրոցի բակում։ Իսկ բարձր դասարանների աշակերտների հետ ֆիզկուլտուրա էր պարապում ընկեր Մուշեղը։ Դպրոցում մեծ ու փոքր սիրում էին նրան։ Բարձր դասարանցիներն ուղղակի ամեն ինչում, նույնիսկ քայլվածքի մեջ, աշխատում էին նմանվել նրան։ Իսկ դպրոցի պահակ Վարդան բիձայի համար դպրոցի վարիչից հետո՝ ընկեր Մուշեղն էր, կամ ինչպես ինքն էր ասում, «Սպորտ Մուշեղը»։

Երբ մայրս պահարանից չոր միրգ ու մուրաբա հանելով դրեց սեղանին ու թեյ լցրեց թանկագին հյուրի և բոլորիս համար, ընկեր Մուշեղն ասաց.

— Վարպե՛տ Սերգո, ախր ես ձեզ մոտ գործով եմ եկել...

— Աչքիս վրա,— պատրաստակամությամբ կտրեց հայրս,— ի՞նչ գործով։

— Ձեր երեխայի։

— Ո՞նց թե,— զարմացավ հայրս,— հո չարություն չի՞ արել...

Ես մի քիչ վախեցա, բայց ընկեր Մուշեղը ծիծաղելով պատասխանեց.

— Ո՛չ, ինչ եք ասում, խոսքը դրա մասին չէ։

Ու նա շեշտեց, որ ես շատ եմ թուլակազմ։

— Ի՞նչ անենք,— լացակումած ասաց մայրս.— ասում եմ՝ մի տարի դպրոցից ետ գցենք, Հովսեփը չի թողնում։

— Ետ գցե՞լ, ինչո՞ւ ետ գցել, ա՛յ, ես ուրիշ ծրագիր ունեմ,—ասաց ընկեր Մուշեղն ու սկսեց պատմել ֆիզկուլտուրայի մասին։— Երեխայի հետ ես ինքս կպարապեմ.

միայն թե դուք ձեր համաձայնությունը տվեք։

Ծնողներս, իհարկե, տվեցին իրենց համաձայնությունը։ Ընկեր Մուշեղը գնաց։

***

Հաջորդ առավոտյան մայրս ինձ արթնացրեց ժամը յոթին և ուղարկեց դպրոցի բակ։ Տնից դուրս գալով մտածում էի, թե հիմա դպրոցի բակում ընկեր Մուշեղն ինձ է սպասում. բայց երբ դպրոցի բակ մտա, տեսա, որ ինձնից բացի մի քանի ուրիշ տղաներ էլ են եկել մեր և հարևան դասարաններից։ Երեխաները շրջապատել էին ընկեր Մուշեղին, իսկ նա կանգնել էր կենտրոնում ու նրանց հետ համեմատած հսկական հսկա էր թվում։



— Հիմա սկսում ենք լիցքային վարժությունները:

Երբ ես մոտեցա ու բարևեցի, ընկեր Մուշեղն ասաց.

— Դե, արդեն բոլորը ներկա են, կարող ենք սկսել։ Ապա մի շարք կազմեցեք՝ տեսնեմ։

Շարք կանգնեցինք։

— Հիմա վազեք իմ հետևից։

Նա սկսեց մեծ-մեծ քայլերով շրջան գործել։ Նա քայլում էր, իսկ մենք վազում էինք ու հազիվ էինք հասնում նրա հետևից։ Ընկեր Մուշեղը կամաց-կամաց դանդաղեցրեց քայլերն ու կանգ առավ։ Մենք էլ կանգնեցինք։

— Հիմա սկսում ենք լիցքային վարժությունները,— ասաց ընկեր Մուշեղը։

Նա մեկ-մեկ ցույց էր տալիս շարժումները, ապա բոլորս միասին կատարում էինք։

Լիցքային վարժություններից հետո ընկեր Մուշեղը մեզ մի անգամ էլ վազեցրեց ու շարքով տարավ դեպի ջրի ծորակը, որ գտնըվում էր բակի ծայրին։

— Կանգ ա՛ռ,— հրամայեց նա։

Կանգ առանք։

— Հիմա նայեցեք, թե ես ինչ եմ անելու։

Նա արագությամբ հանեց կարճաթև սպորտային վերնաշապիկն ու անթև մայկան, գլուխը և թիկունքը բռնեց ծորակի տակ ու սկսեց ջուր շփել կրծքին։

Քիչ հետո նա չոր սրբիչով սրբում էր մարմինը։ Նրա թիկունքը պլպըլում էր բրոնզի նման, իսկ խոնավ մազերը թափվել էին ճակատին։

— Գե՛, առաջինը հանվի, — կարգադրեց նա։

Առաջինը ես էի։ Ես վախվըխելով հանեցի վերնաշապիկս։

— Համարձա՛կ, համարձա՛կ,— քաջալերեց նա,— սրանից ոչ մի վնաս չկա։

Մի վայրկյան անց, ես թիկունքս պահել էի ծորակի տակ, իսկ ընկեր Մուշեղը վարժ ձեռքերով շփում էր մարմինս։

— Բավական է,— ասաց նա և ինձ ծորակի տակից դուրս բերելով փաթաթեց չոր ու կոշտ սրբիչի մեջ։— Շփի՛ր, ամո՛ւր, ամո՛ւր...

Ես շփում էի, որքան ուժս պատում էր։

— Ապրես,— ասաց ընկեր Մուշեղը,— հագնվի՛ր։

Այդպես բոլոր տղաներն էլ թիկունքները գրին ծորակի տակ և մարմինները շփեցին սրբիչով։

Քիչ հետո ընկեր Մուշեղը մեզ տուն ուղարկեց նախօրոք պատվիրելով հաջորդ օրը մի-մի սրբիչ բերել դպրոց։

Ես տուն գնացի։ Չի կարելի ասել, թե այդ

օրը ես նախորդ օրերից ավելի լավ էի զգում ինձ. ընդհակառակը, ոտքերիս մկանները ցավում էին, իսկ կուրծքս ու թիկունքս այրվում։

***

Հաջորդ առավոտյան ես նորից դպրոցի բակում էի։ Այս անգամ արդեն հետս տարել էի մի մաքուր սրբիչ, որ մայրիկս գնել էր հատկապես այդ նպատակի համար։

Այդ օրն էլ գրեթե նույնն արեցինք, բայց միայն թե այս անգամ ավելի վարժ էինք կատարում շարժումները, իսկ ջրով շփվելուց առաջ ընկեր Մուշեղը մեզ տարավ թռիչքի փոսի մոտ և փորձեց, թե մեզանից յուրաքանչյուրն ինչպես է ցատկում։

Այդպես շարունակվեց երկար ժամանակ։ Եկան ամառային արձակուրդները։ Ընկեր Մուշեղը պիոներական ճամբար մեկնեց ու չնայած մենք դեռ փոքր էինք, բայց պիոներական կազմակերպության ղեկավարներին խնդրելով, մեզ էլ իր հետ տարավ։

Ճամբարում առավոտից երեկո մենք զանազան խաղեր էինք կազմակերպում, լողանում էինք մոտակա գետում, արևի վաննաներ ընդունում։ Բոլորիս քթերն այրված, պլոկված էին, իսկ թիկունքներս այնպես էին պլպլում, կարծես բրոնզագույն փոշու մեջ էինք թավալվել։

Պարապմունքներն սկսելու օրից ես այլևս ոչ մի անգամ չհիվանդացա, հավերժական հարբուխներն ու բկացավերը չքացան։ Ես դարձյալ առաջվա բարալիկ ու բարձրահասակ տղան էի, բայց այժմ արդեն այնքան շատ չէի հոգնում, իսկ թռչելու գործում մեր խմբի տղաներից ոչ մեկն ինձ հետ չէր կարողանում մրցել։

— Վատ չես ցատկում,— ասում էր ընկեր Մուշեղը,— միայն թե, ա՛յ, պատաձողի վրա՝ ոնց որ տոպրակ։

Ընկեր Մուշեղն, իհարկե, կատակում էր, բայց կատակով ասված ճշմարտություն էր։ Ես զգում էի, որ պատաձողի վրա տղաներն անհամեմատ ավելի լավ էին անում մեզ հանձնարարվող վարժությունները։ Երբ ես պատաձողին էի մոտենում, մի քանի կատակաբաններ «լուրջ» դեմք էին ընդունում և շրջապատողներին խնդրում մի կողմ քաշվել։

— Այս սպորտսմենը մի քիչ վտանգավոր է,— ասում էին նրանք, ակնարկելով մի դեպք, երբ ես պատաձողից պոկվելով ընկել էի ընկերներիցս մեկի գլխին։

Իսկ ես ուզում էի ինչ գնով էլ լինի հասնել նրանց. դրա համար էլ ժամերով չէի հեռանում պատաձողից, իսկ որևէ ծառի մոտից անցնելիս աչքերով որոնում էի, թե չկա՞ արդյոք մի հարմար ճյուղ, որից կարելի լիներ կախվել։ Մի քանի անգամ ընկա. մի անգամ, քթիցս նույնիսկ արյուն եկավ, բայց կամաց-կամաց թևերս ամրացան, գոտկատեղիս մկանները պրկվեցին և առաջին հաղթանակս այն եղավ, որ սովորեցի ձեռքերով դեպի վեր ձգել մարմինս և գլխիվայր շուռ գալ պատաձողի վրա։

Այդ տարվանից մենք ընկեր Մուշեղի հետ շատ մտերմացանք։ Ես նրա հսկողությամբ սկսեցի պարապել սպորտով։ Առանձնապես ինձ գրավում էր թեթև ատլետիկան, վազքը, թռիչքը։

Ծնողներս առանձին երախտագիտությամբ լցվեցին ընկեր Մուշեղի նկատմամբ։ Մորս համար ընկեր Մուշեղն աշխարհի ամենալավ մարդն էր։

— Հոգուն մատա՜ղ, բալիս ուսուցիչը չի, բալիս ախպերն ա,— ամեն անգամ ասում էր նա հարևաններին, հենց որ խոսք էր բացվում իմ և ուսուցչիս մասին։

Բայց «ախպերս» քնքշություններ շատ էլ չէր սիրում։ Նա այնքան խիստ էր հետևում իմ օրվա ռեժիմին, այնքան ժլատ էր գովելու խնդրում, որ առաջին տարիներին ես, ճիշտն ասած, չէի հասկանում՝ իսկապես նա գոհ է ինձնից, թե՞ ոչ։

***

Անցան տարիներ։ Ես արդեն ութերորդ դասարանի աշակերտ էի և դպրոցի մարմնամարզական խմբակի անդամ։ Խմբակը ղեկավարում էր ընկեր Մուշեղը։ Պարապմունքների ժամանակ ես ավելի շատ թռիչքներ էի փորձում. թռիչք բարձրության, թռիչք ձողով և հատկապես թռիչք երկարության։ Ընկեր Մուշեղն ամեն օր չափում էր իմ թռած տարածությունը, որն օրն-օրին երկարում էր։ Բայց նա ոչինչ չէր ասում. միայն թեթևակի

ժպտում էր բեղի տակ և ես արդեն հասկանում էի, որ նա գոհ է։

Այդ տարի համաքաղաքային պիոներական օլիմպիադա եղավ։ Մայիսի սկզբին, մի կիրակի օր քաղաքի ստադիոնը լիքն էր հանդիսատեսներով։ Այդտեղ էին քաղաքի դպրոցների աշակերտներ, ուսուցիչներ, պիոներական աշխատողներ, սպորտսմեններ։ Վազքուղիները բաժանված էին սպիտակ երիզներով։ Ստարտի մոտ, գետնի վրա ծածանվում էին փոքրիկ գունավոր դրոշակները։ Դրոշակների մոտ խմբվել էին վազողներն ու սպասում էին իրենց հերթին, իսկ մենք՝ մի քանի տասնյակ ցատկողներս հավաքվել էինք առանձին հրապարակում, թռիչքի՝ թեփով լցված փոսի մոտ։

Ընկեր Մուշեղը երկու ուրիշ սպորտսմենների հետ նստած էր հենց այդտեղ դրված դատավորական սեղանի առաջ, իսկ երկու ուրիշ դատավորներ թիթեղյա մետրաչափերը ձեռքներին կանգնած էին փոսի մոտ։

Հերթականություն սահմանեցին և սկսվեց մրցությունը։ Ամեն մեկս ցատկելու էինք երեք անգամ։ Այնպես էր պատահել, որ ես վերջինն էի։ Տղաները ցատկում էին, փոսի մոտ կանգնած դատավորները չափում էին տարածությունը և զեկուցում սեղանի մոտ նստածներին։

— Չորս մետր տասնութ...

— Չորս մետր քսանմեկ...

— Չորս մետր հինգ...

Ընկեր Մուշեղը սեղանին դրված թղթի վրա մատիտով նշում էր դատավորների ասածները և բեղի տակ ժպտում։ Ես հասկանում էի, որ այդ նա ինձ համար է ժպտում։

Անունս կարդացին։ Ես լսեցի կարգադրու-



Վերջին թռիչքն ամենից հաջողն էր։

թյունը և խո-խո գնալով տասնհինգ մետր հեռացա փոսից։ Դատավորը դրոշակը շարժեց։ Ես նախ դանդաղ, մեծ-մեծ քայլերով, ապա արագ, մանրիկ քայլերով վազեցի ինձ փոսից բաժանող տարածությունը և աջ ոտքս տախտակին խփելով ցատկեցի։

— Չորս մետր վաթսունչորս,— տարածությունը չափելով ասաց դատավորը։

Երկրորդ անգամ ես թռա չորս մետր ութսունվեց սանտիմետր։

Երրորդ թռիչքի նշանը տվին։ Ես վազքով մոտեցա փոսին։ Հիշեցի ընկեր Մուշեղի խորհուրդը՝ թռչել դեպի վեր, ոտքերը կծկել կզակի մոտ, թևերն ուղիղ պարզել առաջ...

Վերջին թռիչքն ամենից հաջողն էր։

— Հինգ մետր տասնմեկ,— զեկուցեց դատավորը։



Իմ պատմությունը վերջացավ։ Ես հիմա պիոներ չեմ, ես մեծ եմ արդեն, ինստիտուտ եմ ավարտել։ Այդ օրից հետո շատ ջրեր են հոսել։ Ես այժմ սպորտի վարպետ եմ։ Թուլակազմության, կամ ինչպես մայրս էր ասում «նվազության» մասին խոսք էլ չի կարող լինել։ Իսկ իմ թանկագին ուսուցիչը հիմա թոռներին արդեն ձերմակ մազեր ունի։

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 85 ՏԱՐԻՆ



Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԸ

Ամեն օր հազարավոր մարդիկ են այցելում Վ. Ի. Լենինի կենտրոնական թանգարանը: Նրանք գալիս են աշխարհի բոլոր կողմերից: Թանգարանում եղած բազմաթիվ փաստաթղթերը, լուսանկարները, նկարները, գրքերն ու բրոշյուրները պատմում են մեծ Լենինի կյանքի մասին:

Առաջին դահլիճում ցուցադրված նյութերը ծանոթացնում են Վլադիմիր Ուլյանովի մանկությանն ու պատանեկությանը: Ցուցափեղկում դրված են նրա ավարտական վկայականն ու ոսկե մեդալը: Վկայականում բոլոր առարկաների դիմաց հինգ է նշանակված: Կան նյութեր, որոնք ծանոթացնում են Վլադիմիր Ուլյանովի վաղ շրջանի հեղափոխական գործունեությանը:

Նրան ներքսում էին ամեն տեսակի վտանգի, նետում բանտ, աքսոր ուղարկում... Պրոլետարիատի առաջնորդը ստիպված էր թողնել հայրենիքը և թափառել օտար երկրներում: Բայց ո՛չ ցարի ու ոստիկանների հետապնդումները և ո՛չ էլ բանտն ու աքսորը չկարողացան կոտրել Լենինի երկաթյա կամքը: Նա հերոսաբար հաղթահարում էր բոլոր դժվարությունները: Մի այլ նկար պատկերում է Ֆինլանդական կայարանի հրապարակը: Լենինը նոր է վերադարձել տարագրությունից, որպեսզի գլխավորի ռևոլյուցիան: Նա կանգնած է զրահապատի վրա. նրան շրջապատել են բանվորներ, զինվորներ, նավաստիներ...

Ահա Լենինը Պուտիլովյան գործարանում և Կոմունիստական երրորդ համագումարում: Մարդիկ կլանված լսում են լենինյան պարզ ու հստակ խոսքերը:

Մի ուրիշ նկարում պատկերված է շաբաթօրյակ. Լենինը բանվորների հետ գերաններ է տեղափոխում:

Պարզ և անկեղծ, մեծ և հարազատ, ղեկավար և ընկեր. այդպիսին էր Լենինը կյանքում և այդպես էլ պատկերում են նրան թանգարանի նյութերը: Մարդ չի կարող առանց հուզմունքի նայել Լենինի անձնական իրերին: Ահա նրա ժամացույցը: Նա շատ թանկ էր գնահատում իր յուրաքանչյուր րոպեն: Ապակու տակ է դրված այն գրիչը, որով Լենինը 1917 թվականի նոյեմբերին ստորագրել է Սովետական Կառավարության առաջին դեկրետները: Ցուցափեղկում դրված է Լենինի պարտիական տոմսը:

Վերջին դահլիճում այցելուներն ավելի երկար են մնում. թվում է, թե նրանք մի քանի ժամ Լենինի մոտ են, խոսում են նրա հետ և էլ չեն ուզում բաժանվել նրանից: Ելքի դռան մոտ մարդիկ ետ են դառնում, նորից ու նորից նայում ներս: Հետո այցելուները գնում են թանգարանի մեծ դահլիճը, որը լեփլեցուն է մարդկանցով: Նրանք էկրանի վրա տեսնում են խսկական Լենինին: Ահա նա, Իլյիչը, քայլում է, կտրուկ ու վճռական շարժումներ է անում. լսվում է նրա հարազատ ձայնը... Կինոնկարը վերջանում է, բայց մարդիկ դեռ նստած են, նրանք չեն ուզում հեռանալ, ուզում են նորից ու նորից տեսնել Լենինին:

Վ. Ի. Լենինի կենտրոնական թանգարանը այցելուներին սոսկ Լենինի կենսագրությունը չէ, որ պատմում է. դա Կոմունիստական պարտիայի պատմությունն է:



Վ. Ի. ԼԵՆԻՆԸ և Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ Գորկիում։ 1922 թ.

# ԱՅՍՏԵՂ ԱՊՐԵԼ Է ԼԵՆԻՆԸ

Մոսկվայի մոտ գտնվող Գորկի գյուղից քիչ հեռու տարածվում է անտառապատ մի բլրակ։ Հինավուրց այգու խորքում կանգնած է երկհարկանի մի տուն։ Դա Լենինի տուն-թանգարանն է։ Այստեղ իր կյանքի վերջին տարիներն է անցկացրել բազմոր դասակարգի մեծագույն առաջնորդը։ Գորկիում եղած ժամանակ Վ. Ի. Լենինը ոչ մի րոպե չի դադարեցրել Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ղեկավարի պատասխանատու աշխատանքը։ Այստեղ Լենինը գրել է մի շարք աշխատություններ։

Թանգարանի դահլիճներից մեկը պատմում է Լենինի նկատմամբ միլիոնավոր մասսաների ունեցած անհուն սիրո մասին։ Անա անգլիական բանվորների ուղարկած լիկտրական կառքը, Տուլայի հանանգի գեղջկուհու ասեղնագործած երեսսրբիչը, Ուզբեկստանի աշխատավորների նվիրած սեղանն ու աթոռները...

Խոր տպավորություն է առաջացնում Լենինի անձնական սենյակը։ Կահավորումը շատ սովորական է, չկա՛ ավելորդ իր կամ զարդարանք։ Փոքրիկ սեղանի վրա դրված է Մաքսիմ Գորկու «Իմ համալսարանները», Ջեկ Լոնդոնի «Կյանքի սերը» գրքերը։

Զմռան ցուրտ օրերին Լենինը թույլ չէր տալիս տաքացնելու ամբողջ շենքը, որ շատ վառելիք չծախսվի և ապրում էր մի փոքրիկ սենյակում։ Մեր երկրին այն ժամանակ մեծ կարիքի մեջ էր, և Լենինը ցանկանում էր խնայողաբար ծախսել ամեն մի կտոր փայտն ու ածուխը։ Լենինի համեստության ու պարտաճանաչության մասին է խոսում ցուցափեղկերից մեկում դրված մի գրություն։ Վ. Մ. Մոլոտովին ուղղված այդ նամակում նա գրում է, որ իր աշխատավարձը լրանում է, բայց առողջությունը լավ չէ, և բժիշկները թույլ չեն տալիս աշխատանքի անցնել։ Վերջում Լենինը խնդրում է, թե արդյո՞ք հնարավոր չէ մի քանի օրով երկարաձգել արձակուրդը։

Գորկիում բոլոր գյուղացիները գիտեին Լենինին։ 1921 թվականի հունվարի 9-ին գյուղացիների ժողովում Լենինը պատմում էր, որ կարճ ժամանակից հետո կվերափոխվի գյուղացիների խավար ու թշվառ կյանքը։ Լենինը խորհուրդ տվեց էլեկտրականություն անցկացնել գյուղում։ Վեց ամիս հետո գյուղական խրճիթներում սկսեցին վառվել «Իլյիչի լամպերը»։ Լենինը շատ էր հետաքրքրվում Գորկի գյուղում հացահատիկային կուլտուրաների բերքատվության հարցերով։ Թանգարանում դրված են Լենինի ձեռքով քաղած ցորենի հասկերի փնջերը։

1949 թվականի հունվարի 21-ին Գորկիում բացված Լենինի տուն-թանգարանը դարձել է սովետական մարդկանց ամենասիրելի վայրերից մեկը։

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ, ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ, ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

## ԱՌԱՋԻՆ ԵԼՈՒՅԹԸ

Մեկ շաբաթից ավելի էր, որ Ռաֆիկը պատրաստվում էր ռուսաց լեզվի խմբակում ելույթ ունենալու ռուս մեծ գրող Նեկրասովի կյանքի ու գրական գործունեության մասին։ Նա ամեն օր կարդում էր ռուսական թերթեր, գրքեր, ռուսերեն էր խոսում ընկերների հետ։ Երբ նա իր ձեռքն էր վերցնում ելույթի տեքստը և սկսում էր կարդալ, անսովոր կերպով հուզվում էր։

Երկու օր էր մնում մինչև երեկույթը։ Ռաֆիկը Տանյայի հետ դպրոցի աստիճաններով բարձրանալիս հանկարծ միջանցքի պատին նկատեց մեծ-մեծ տառերով գրված ինչ-որ հայտարարություն։

— Ի՞նչ հայտարարություն է,— հարցրեց նա ընկերոջը։

— Երևի ռուսաց լեզվի խմբակի երեկույթի մասին է,— պատասխանեց Տանյան։

Այդպես էլ կար։ Հայտարարության մեջ գրված էր Ռաֆիկի անունը որպես զեկուցողի։ Երբ նա կարդում էր այդ տողերը, սիրտն ավելի արագ էր բաբախում։

— Չգիտեմ ինչո՞ւ եմ այսպես անհանգստանում, Տանյա։

— Հասկանալի է,— պատասխանեց Տանյան,— դու լավ պետք է նախապատրաստվես։ Այն ժամանակ երեկույթը հետաքրքիր կանցնի։ Եվ դրա մեծ մասը կախված է քո ելույթից։

Նշանակված օրը, երեկույթն սկսվելուց դեռ շատ առաջ Ապարանի Ստալինի անվան միջնակարգ դըպրոցում մեծ աշխուժություն էր տիրում։ Աշակերտներից բացի եկել էին նաև բոլոր ուսուցիչները։

Երեկույթն սկսվեց։ Ռաֆիկ Մուշեղյանը նկատելի հուզմունքով կարդում էր իր ելույթը։ Գնալով նրա ձայնն ավելի համարձակ էր հնչում։ Բոլորն ուշադրությամբ լսում էին նրան։ Խոսելիս Ռաֆիկը մեկ-մեկ նայում էր ընկերներին, որոնց ուրախ ժպիտն ավելի էր ոգևորում նրան։ Երբ նա արտասանեց իր ելույթի վերջին բառերը, բոլորն սկսեցին ծափահարել։

«Ուրեմն հաջող էր» — մտածեց Ռաֆիկը ու նստեց առաջին նստարանին։

Ելույթներ ունեցան նաև Էդիկը, Վարսիկը և ուրիշները, որոնք նույնպես ռուսերեն խոսեցին։

Դրանից հետո սկսվեց երեկույթի գեղարվեստական մասը։ Օֆելյան ռուսերեն արտասանեց Նեկրասովի «Բելինսկու հիշատակին» ոտանավորը։ Համլիկը՝ «Օրորոցի երգը», իսկ «Երկաթուղագիծը» արտասանեցին Ավետիքը և Հակոբը։

«Փոքրիկ գյուղացին» բանաստեղծությունը հաջող կատարեցին Տանյան ու Սուրիկը։

Բոլորը գոհ հեռացան երեկույթից։

Ա. ԱՅԱՆԴՅԱՆ

## ՋՈԿԱՏԱՎԱՐ ԲԱՐԿԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆԸ

Աշուն էր։ Հինգերորդ ջոկատի առաջին և երրորդ օղակները աշխատում էին մանկատան հողամասում։ Նրանցից ամեն մեկը պետք է տներ տասը ծառ և քսան թուփ։ Բայց երրորդ օղակում գործը ոչ մի կերպ առաջ չէր գնում։ Տղաները վիճում էին, մի գործը չավարտած մի ուրիշը սկսում։ Նրանց օղակավար Սարիբեկը մեկ այս կողմ էր վազում, մեկ այն, համոզելով տղաներին, որ նրանք մի բան անեն։ Մյուս օղակն աշխատում էր լավ ու համերաշխ։ Եվ դա պատահական չէր, որովհետև Ֆրունզիկն իր օղակում աշխատանքն ավելի լավ էր կազմակերպել, քան Սարիբեկը։ Յուրաքանչյուր պիոներ նախօրոք գիտեր, թե ինքը քանի ծառ ու թուփ պետք է տնկի, որտեղից պետք է վերցնի բուսահողն ու տընկիները։

Օղակի անհաջողությունը շատ տխրեցրեց Սարիբեկին։ Նա մտածում էր գնալ և հրաժարվել հանձնարարությունից։ Բայց նրա մոտ եկավ ջոկատավարը։ Բարկենը բացատրեց, որ նա սխալ է վարվում, երբ գործը առանց նախապատրաստելու է սկսում։ Դասից հետո ընկեր Իսրայելյանի հետ նրան խորհուրդներ տվեց, թե ինչպես պետք է նոր հետաքրքիր գործեր կազմակերպի։ Եվ Սարիբեկը իր օղակով սկսեց նոր հանձնարարություններ կատարել, ավելի վառ անցկացնել հավաքույթները։ Ամեն մի աշխատանքի մեջ նրան օգնում էր Բարկենը և ուրախանում նրա առաջին հաջողություններով։



— Նա մեր ջոկատավարն է, մեր ընկերը... Բայց գիտե՞ք որքա՞ն բան գիտի նա,— ասում են պիոներները.— Այս մոդելները մենք պատրաստել ենք նրա հետ միասին, այս ծաղիկները խնամել ու աճեցրել նրա օգնությամբ։ Արշավների ժամանակ նա միշտ առջևից է գնում և առաջինը սկսում երգել։ Բա գովասանագրերն ու նվերները, որ նա ստացել է լավագույն ուսման և պիոներական օրինակելի աշխատանքների համար...

Եվ պիոներները ցույց են տալիս վերջերս ստացած պատվոգիրը, որի վրա գրված է.

«Հայաստանի լենինյան կոմերիտմիության կենտկոմը սույն պատվոգրով պարգևատրում է Քանաքեռի մանկական քաղաքի տասներկուերորդ պիոներական դրուժինայի հինգերորդ ջոկատի ջոկատավար Բարկեն Գևորգյանին՝ պիոներական աշխատանքները լավագույն կերպով կազմակերպելու համար»։

Մ. ԱՄԻՐՅԱՆ

# ՊԱՏՐԱՍՏՎՈՒՄ ԵՆՔ ՔՆՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ

Երբ դասը վերջացավ, Սուսաննան մոտեցավ ինձ, թե՝

— Կգա՞ս միասին պարապենք. չէ՞ որ այսօր ընկեր Սիմոնյանն ասաց, որ պետք է կրկնությունները սկսել չորրորդ քառորդի հենց առաջին օրվանից։

Այդպես էլ արեցինք։ Կրկնությունները մենք սկսում ենք այն ժամանակ, երբ վերջացնում ենք օրվա տնային հանձնարարությունների կատարումը։

— Գիտե՞ք, որքան դժվար է պարապելը, երբ չկան որոշված ժամեր պարապելու համար,— մի անգամ ասաց մեզ ավագ ջոկատավար ընկեր Օֆիկը։

Դրա համար էլ մենք խիստ կերպով պահպանում ենք օրվա ռեժիմը։ Եվ հետո ոչինչ չենք թողնում վաղվան, որովհետև գիտենք, որ «վաղը» կարող է հասնել մինչև տարվա վերջը։

Ջոկատի խորհրդի որոշմամբ լույս ենք ընծայել պատի թերթ։ Թերթի կենտրոնում տեղավորված է օրվա ռեժիմը, իսկ դրա կողքին այն պիոներների ծաղրանկարները, որոնք չեն հետևում ռեժիմին։ Նկարներից մեկում ժամացույցը ցույց է տալիս գիշերվա կեսը, իսկ Սերյոժան նստած պարապում է։ Զվարթին նկարել էինք զրուցելիս այն ժամանակ, երբ նրա ընկերները տանը նստած պարապում են։ Բայց չէ՞ որ ռեժիմի ճիշտ կիրառումն անհրաժեշտ է հատկապես հիմա՝ քննությունների նախապատրաստվելիս։ Այս օրերին պիոներական աշխատանքը մեր ջոկատում ավելի է աշխուժացել։ Ֆրիդան ու Ալբերտը պատրաստել են մի թղթապանակ, որտեղ հավաքվում են նյութեր՝ «Պատրաստվիր քննություններին»։ Պատից կախված է տախտակ, որի վրա գրված է «Հարցեր, պատասխաններ»։ Վերջերս շատ հարցեր են տրվում. օրինակ՝ ինչպե՞ս պատրաստվել քննություններին, ինչպե՞ս լավ պարապել, հանգստանալ և այլն։ Այդ հարցերին պատասխանում են ուսուցիչները։ Մենք ունենք նաև թերթիկ «Լուրեր օղակներից», որտեղ փակցված են տեղեկություններ այն մասին, թե ինչպես պիոներական հավաքույթները, էքսկուրսիաները, խմբակների աշխատանքները օգնում են քննություններին լավ նախապատրաստվելուն։

Է. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ

(էջմիածնի Միկոյանի անվան դպրոցի չորրորդ ջոկատի խորհրդի նախագահ)

# ՄԱՐԻՆ ՈՒ ՄԱՆՈՒՇԱԿԸ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ

Վզիկը ծուռ, գլխիկոր,
Առվի ափին, թփի տակ
Կանգնել էր լուռ ու մոլոր



Մի կապուտաչ մանուշակ։
Մի ժիր աղջիկ նկատեց.
Նայեց, նայեց հիացած,
Իսկույն իր խաղն ընդհատեց
Վազեց մոտիկ ու ասաց.

— Այ սիրունիկ, կապուտակ,
Իմ հոտավետ մանուշակ,
Ինձ գրավեց քո բույրը,
Ես կլինեմ քո քույրը.
Թույլ տուր ձեռք տամ քո թշին,
Մաքրեմ դեմքիդ նուրբ փոշին,
Սրբեմ ցողիկ-արցունքդ,
Շոյեմ կապույտ այտ-ունքդ,

Տանեմ մեր տուն, փայփայեմ,
Սաղկամանում ՚ քեզ պահեմ,
Որ դու անես համարձակ
Լուսամուտի լույսի տակ:
— Ո՛չ, ո՛չ, Բույրիկ իմ Մարի՛,
Գիտեմ, շատ ես դու բարի,
Բայց ձեռք մի՛ տուր իմ բշին,
Մի՛ մաքրիր իմ նուրբ փոշին,
Մի՛ շոյիր իմ այտ-ունքը,
Մի՛ արբիր իմ արցունքը.
Ես արևի սովոր չեմ,
Կչորանամ, կկոչեմ,
Էլ չես շնչի իմ բույրը,
Էլ չես լինի իմ քույրը...
Մարին նրան հասկացավ,
Նստած տեղից վեր կացավ,
Ոչ ձեռք տվեց նա բշին,
Ոչ մաքրեց այն նուրբ փոշին,
Ոչ արբեց ցող-արցունքը,
Ոչ համբուրեց այտ-ունքը:
Միայն ասաց.— Անուշա՛կ,
Իմ հոտավե՛տ մանուշակ,
Այսուհետև սիրով ես
Այցի կգամ շուտ-շուտ քեզ:

# ՈՐՍՈՐԴ ԼԵԽԿՈՆ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

*— Անամպ երկինքը կարծես համր լինի: Այդպիսի երկինքն ինձ դուր չի գալիս,— ասաց ուղեկիցս ու քայլերն ուղղեց դեպի առափնյա թփուտները:*

*Փոթորիկների ու մրրիկների սովոր շունչին, այսպիսի եղանակին դժգոհում է ու սրտնեղում: Ծառերն անշարժ էին, ջրերն անխռով, թռչունները ննջում էին ծառերի ճյուղերին թառած: Գազանները մրափել էին թավուտներում: Խաղաղ էր տայգան, խաղաղ էին նաև նրա բնակիչները:*

*Այդպիսի օրերին շունչն որսորդը տայգա չի մտնում: Ճնշում է նրան այդ համր լռությունը:*

*— Կարծես մարդ գողության է գնում,— զանգատվեց ուղեկիցս:*

*Լեխկո. այսպես էին կոչում նրան: Նա ապրում էր Բուրունդու գետի հովտում: Ծերացել էր Լեխկոն, բայց հրացանն ուսից վայր չէր բերում:*

*— Ես իմ ուղին անցել եմ արդեն,— տրտընջում էր որսորդը,— կյանքիս և մահվան միջև մի քայլ է մնացել:*

*Նա քայլում էր դանդաղ ու մտախոհ, նայում էր վայրի պտուղներով ծանրաբեռնված թփուտներին, երբեմն շոշափում ու փորձում էր նրանց համը: Մոտենում էր նիրհող լճակի ձյունափայլ ջրաշուշաններին, նայում ու թախծում էր ծերունին: Նա հիշում էր հորդառատ ջրերի նման անցկացրած իր տարիները, շռայլ երիտասարդությունը, փորձում էր մտովին քայլել ձյունածածկ լեռների լանջերով, բայց նրա ոտքերը կապարի նման ծանրացել ու հոգնել էին:*

*— Շատ ծերացա,— կիսաձայն խոսում էր Լեխկոն:*

*Մեր ոտքերի տակ ջարդվող չորուկների հարճատյունը խանգարում էր լսել որսորդին. Ես շատ բան չլսեցի: Երկնքի համրությունը խլացնում էր տայգան: Մենք թողեցինք լայն արահետը և երբ ոտք դրինք ընկած ծառերի խռվուղին, մեր առջև բացվեց մի փոքրիկ չքնաղ պուրակ: Հաստաբուն ու բարձր ծառերի միջև նկատեցի մի շերտավոր պախրա: Նա պառկած էր մամուռի վրա, իսկ ծաղիկների ու թավ կանաչի մեջ թռչկոտում էր նրա վտիտ ու նիհար ձագուկը, նրա դունչը սև էր, մորթին փայլուն, և ծով աչքեր ուներ:*

*— Պախրա,— շշնջացի ես և սիրտս սկսեց տրոփել:*

*— Սո՛ւս,— հազիվ լսեցի Լեխկոյի շշուկը, նա բռնեց իմ թևից, և մենք սկսեցինք զգուշությամբ ետ-ետ գնալ, որպեսզի չխանգարենք մայր պախրայի հանգիստը: Բայց մայրը, մայր է, թեկուզ և պախրա. Նա զգաց և շանթահարվածի նման վեր ցատկեց տեղից, մի պահ շփոթվեց ու տերևի նման սկսեց դողալ: Հետո նետվեց դեպի մեզ, կանգնեց մեր առջև և զողդողացող իր ոտքերով սկսեց դոփել գետինը, կարծես թե*

ուզում էր ասել. «Հեռացեք, հեռացեք անհոգի մարդիկ, չդիպչեք իմ բալիկին, չէ՞ որ նա փոքրիկ է. խղճացեք նրա մանկությունը։ Աղաչում եմ ձեզ, հեռացեք»։



...մի պահ շփոթվեց...

Լեխկոյի դեմքը կտավի նման ճերմակել էր հուզմունքից, նա ուղղակի քաշում էր իմ թևից և ինչ-որ բան էր մրմնջում։ Մենք հեռանում էինք։ Եվ երբ շուռ եկանք, որպեսզի վազելով հեռանանք, մեր առաջ՝ կածանի վրա պառկած էր մի ահռելի գիշատիչ գազան։ Ես առաջ էլ էի տեսել այդ գազանին և իսկույն ճանաչեցի՝ շառկերիկն էր։ Լեխկոն ուզեց վար բերել հրացանը, բայց արդեն ուշ էր։ Գազանն անմիջապես վեր թռավ տեղից ու նետի արագությամբ սլացավ դեպի պախրան։ Որսորդը նետվեց գազանի հետևից։ Նա վազում էր. կարծես գիտակցությունը կորցրած լիներ։ Ծառերի ճյուղերը հարվածում էին երեսին, պոկում վրայի հագուստը, բայց նա ոչինչ չէր զգում. մռնչում էր վիրավոր գազանի նման։ Երբ մենք դուրս եկանք թփուտներից, սարսափած պախրան արդեն գետի ափին էր։ Նա մոլորվել էր, շփոթվել. նրա փոքրիկ ձագուկը վախենում էր ջրից, ջուրը չէր մտնում։ Գազանը դանդաղեցրեց վազքը, կանգնեց մի պահ, նայեց փոքրիկ պախրային և թռիչքի պատրաստվեց։ Եվ հենց որ ցնցեց իր կարճ պոչը, որպեսզի թռչի, որոտաց Լեխկոյի հրացանը, և շառկերիկը, որ արդեն օդն էր բարձրացել, սոսկալի ոռնոցով գետին տապալվեց։ Խեղճ պախրան սարսափով բռնված չզգաց անգամ, թե ինչպես դնչով խփեց իր ձագին և գետը գցեց՝ գազանից փրկելու համար։ Լեռներից հոսող վարար ջրերն իրենց փրփրադեզ ալիքների մեջն առան ձագուկին ու թավալգլոր քշեցին առաջ։ Նա փոքրիկ էր, լողալ չգիտեր, ջուրը տանում էր նրան. մայր պախրան բառաչեց, ճչաց և ջուրը նետվեց։ Ձագուկն այլևս չէր երևում, երբեմն նկատվում էր նրա սև դունչը ու նորից կորչում ալիքների մեջ։ Խեղճ մայրը չգիտեր՝ ինչ աներ։ Ձագուկը խեղդվում էր։ Նա մի քանի անգամ ելավ ջրի երեսը, թույլ կերպով բառաչեց ու ընկավ։ Լեխկոն դեն գցեց հրացանը, հանեց բաճկոնը և նետվեց ջուրը։

Մի քանի րոպե հետո փոքրիկ կենդանին գրկին, Լեխկոն դուրս եկավ ջրից։ Փոքրիկն այնքան էր թուլացել, որ ընկավ մամուռի վրա ու անշարժ պառկեց. նրա մանկական վճիտ աչքերը պղտոր էին ու անտարբեր։ Լեխկոն մի պահ անգամ չսպասեց։ Մենք անմիջապես հեռացանք ափից, որպեսզի մայր պախրան դուրս գա ջրից ու մոտենա իր ձագուկին։ Երբ մենք բավականաչափ հեռացել էինք, պախրան ափ ելավ։

Սոճիների անտառակում Լեխկոն հանգըստացած շունչ քաշեց։ Եվ երբ բլրակի վրա երևացին հեռացող պախրան ու իր ձագուկը, նայեց երկնքին ու նորից ասաց.

— Այսպիսի երկինքն ինձ դուր չի գալիս։ Նա խաբում է պախրաներին ու թռչուններին, քուն ու հանգստություն է բերում, և կենդանիները մոռանում են վտանգի մասին։

Մենք հեռանում էինք տայգայից։ Անամպ երկինքը առաջվա նման սառն էր ու համր...

## ԳԻՇԵՐԱՅԻՆ ՃԻՉ

Դրսում սաստիկ ցուրտ էր։ Դեռ երեկոյից ջերմաչափը ցույց էր տալիս մինուս վաթսուն աստիճան։ Տնքում էր սառած երկիրը, խուլ դղրդյունով պատառոտվում էին սառույցի ահագին զանգվածները։ Ծառերը կռացել ու կուչ էին եկել։

Կես գիշեր էր։ Նոր էի աչքս կպցրել։ Արթնացա տայգայում ճչացող ու աղեկտուր լացող երեխայի ձայնից։ Դուրս եկա բնապար-

*կից: Մարմնովս սարսուռ անցավ: Կես գիշերին, այս սոսկալի սահմանների տայգայի խորքում մենակ երեխա՞...*

*Բղավում էր երեխան, հեկեկում: Երբեմն նրա ձայնը նվաղում էր, կտրվում, և թվաց ինձ, թե մեկը բռնեց նրա քնքուշ պարանոցից ու սկսեց խեղդել:*

*— Օլչա՛ն, Օլչա՜ն,— բղավեցի ես անբնական ձայնով և խփեցի քնած պատանու կողքին:*

*Օլչանը, որ քնած էր մանկան քաղցր ու խորը քնով, վեր թռավ տեղից:*

*— Ցա՛ն, ի՞նչ պատահեց:*

*— Տայգայում երեխա կա, խեղդում, հոշոտում են նրան, շուտ արա՛, լսո՞ւմ ես, լսո՞ւմ ես...*

*Օլչանը մի պահ ականջ դրեց, ապա ժպտաց:*

*— Ցա՛ն, սիրելիս, հանգստացիր. այս ժամին տայգայում երեխա չի լինի: Դա նապաստակն է ճչում ու լալիս, և որովհետև սաստիկ ցուրտ է, օդը կարծրացած է, ձորերի արձագանքն ուժեղանում ու փոխում է ձայնը, և քեզ թվում է, թե երեխա է լալիս: Նապաստակ է. նա սառչում է ցրտից, կամ շառկերիկն է հետևից ընկել. հանվիր ու քնիր: Այսպիսի ցուրտ գիշերներին նապաստակները ողջ գիշեր լալիս են ու ճչում մինչև առավոտ:*

# ՍՔԱՆՉԵԼԻ ԿՂԶԻ

**Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

*(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)*

Մոտենանք Չինաստանի քարտեզին: Նրա հարավ-արևելյան ափերից ոչ հեռու գտնվում է Տայվան կղզին, որը հայտնի է նաև Ֆորմոզա անունով: Կղզու իսկական, չինական անունը Տայվան է:

Պորտուգալացիները առաջին եվրոպացիներն էին, որ ծովով հարավից մոտեցան չինական ափերին: Նրանք հիանում էին հարավային Չինաստանի բնության փարթամությամբ, հատկապես՝ Տայվանի բնությամբ: Դրա համար էլ կղզին անվանեցին Ֆորմոզա, որ բառացի նշանակում է «սքանչելի կղզի»:

1895 թվականին ճապոնացիները գրավեցին Տայվան կղզին և գործածում էին Ֆորմոզա անունը: Բայց Տայվանը կղզու չինական անունն է և, քանի որ կղզին պատկանում է Չինաստանին, ճիշտ է նրան տալ Տայվան անունը:

Տայվանը գրավում է մոտ երեսունվեց հազար քառակուսի կիլոմետր տարածություն և ունի մոտ յոթ միլիոն բնակիչ: Կղզու վարչական կենտրոնն է Տայբեյ քաղաքը, որտեղ չորս-հարյուր հազար մարդ է ապրում: Բնակչության իննսունութ տոկոսը չինացիներ են, իսկ երկու տոկոսը՝ մոտ հարյուր երեսուն հազարը՝ մալայացիներ: Բնակչության միջին խտությունը երեք հարյուր մարդ է մեկ քառակուսի կիլոմետրի վրա:

Տայվանը ասիական ցամաքից բաժանվում է նեղուցով, որի լայնությունը ամենանեղ մասում կազմում է հարյուր քառասուն կիլոմետր: Այդ նեղուցի հարավային մասում, Տայվանից մոտ հիսուն կիլոմետր հարավ-արևմուտք, գտնվում է Պենխուլեդաո (Պեսկադորյան) կղզիների խումբը, որը բաղկացած է յոթանասունվեց մանր կղզիներից: «Պեսկադորես» իսպաներեն նշանակում է «Ձկնորսի կղզիներ»: Նրանց չինական անվանումը Պենխուլեդաո է:

Այս կղզիները, ինչպես և Տայվանը, այժմ բռնի կերպով գրավել են Ամերիկայի Միացյալ Նահանգները:

Հյուսիսից հարավ Տայվանը ձգվում է երեք հարյուր ութսուն կիլոմետր, իսկ արևելքից արևմուտք՝ ամենալայն մասում մոտ հարյուր քառասուն կիլոմետր: Կղզին ունի արևադարձային կլիմա՝ առատ տեղումներով, ամբողջապես պատած է արևադարձային փարթամ անտառներով: Ունի բանանի, բամբուկի, կամֆորայի ու խցանի ծառի, զանազան արմավենիների և կաղնու հարուստ

թուսականություն: Բնական կամֆորայի արտադրության համաշխարհային մոնոպոլիան գտնվում է Տայվանի ձեռքում:

Լեռնային վայրերում դրանց փոխարինում




են նաև կրիպտոմերան, կարմիր մայրին, արևադարձային սոճին, իսկ ամենից ավելի բարձրադիր վայրերում՝ ալպյան խոտերը:

Տայվանի գյուղատնտեսության մեջ գլխավոր տեղը գրավում է բրնձի, շաքարեղեգնի, թեյի, բանանի, կիտրոնի և ջութի մշակությունը: Անտառները բռնում են կղզու ամբողջ տարածության ավելի քան կեսը՝ մոտ երկու միլիոն հեկտար: Սակայն, այդ անտառների օգտագործումը դժվարությունների հետ է կապված, որովհետև նրանց մեծ մասը գտնվում է երկու հազարից երեք հազար հինգ հարյուր մետր բարձրությունների վրա:

Տայվանի հանքային հարստությունները դեռ լավ չեն ուսումնասիրված. այժմ հայտնի են միայն ոսկին ու քարածուխը:

Կղզու երկաթուղային ցանցի երկարությունը հազար հինգ հարյուր հիսուն կիլոմետր է: Բացի այդ, կա նաև երկու հազար կիլոմետր երկարությամբ նեղգիծ երկաթուղի, որով շաքարեղեգնը դաշտերից տեղափոխում են գործարանները:

Մինչև 1945 թվականը, այսինքն՝ մինչև յապոնական իմպերիալիստների ջախջախումը Տայվանը Յապոնիայի գաղութն էր:

1943 թվականի դեկտեմբերի մեկին Կահիրեի կոնֆերանսը հաստատել էր Տայվանի վերադարձը Չինաստանին: Այդ նույնը կրկին անգամ հաստատվեց Պոտսդամի համաձայնագրով: Սակայն Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Տրումենը 1950 թվականին հրաման տվեց Տայվանը զավթելու մասին: Այնտեղ այժմ ապաստան է գտել Չան Կայ-շիի դավաճանական հրոսակախումբը:

Այս բոլորը հակասում են գոյություն ունեցող միջազգային համաձայնագրերին և այն անժխտելի փաստին, որ Տայվանը Չինաստանի վաղեմի տերիտորիան է:

Այժմ բոլոր խաղաղասեր ժողովուրդները, հատկապես չին ժողովուրդը, շահագրգռված են, որ չանկայշիական թափթփուկներն ու նրանց հովանավորող ամերիկյան ագրեսորները վռնդվեն Տայվանից:

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի պրեմյեր Չժոու էն-լայը ասել է. «Չին ժողովուրդը պետք է անպայման ազատագրի Տայվանը: Քանի դեռ մենք Տայվանը չենք ազատագրել, մեր տերիտորիան չի լինի ամբողջական, չեն ստեղծվի պայմաններ խաղաղ շինարարության համար մեր երկրում, խաղաղությունը Հեռավոր Արևելքում և ամբողջ աշխարհում չի ապահովվի»:

# ՏԱՆՁԵՆՈՒ ՎՐԱ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

*Վաշագան գյուղի այգիներում հասել էին տանձն ու խնձորը։ Ամեն մի ծառ այնքան էր ծանրացել, որ հազիվ էր կարողանում դիմանալ իր բեռի տակ։*

*Փոքրիկ Միքայելն այդ օրը ընկերների հետ էր։ Ամբողջ ցերեկը նրանք խաղացել էին միասին, լողացել այգիները կիսող գետակում։ Իսկ երբ արևը դեպի արևմուտք*

Խուստուփ սարի հետեն իջավ, Միքայելը տուն վերադարձավ, նստեց բակում ու սկսեց գիրք կարդալ։

Արդեն վրա էր հասնում երեկոն, երբ կարդալը թողեց։ Նա քայլերն ուղղեց դեպի իրենց տնամերձ այգին, որ թավուտ անտառին կից էր։ Լավ էր այդ ժամին այգում՝ զով, դուրեկան։ Մեղմ օրորվում էին ծառերը։ Շշնջում էր հինավուրց անտառը։

Կոլտնտեսականների վերջին խմբերն էին տուն դառնում այգիներից ու դաշտերից, իսկ Միքայելի համար կարծես լույսը նոր էր բացվում։ Լուսինը երկնակամարից լեռան փեշերին ցրեց իր արծաթե շողերը։ Այգում Միքայելին ամենից ավելի գրավեց այն տանձենին, որի խոշոր պտուղները լուսնի



Բրդոտը մոտեցավ ծառին...

լույսի տակ շատ լավ նշմարվում էին։ Տանձենու բունը գրեթե հորիզոնական դիրք ուներ. երևում էր, որ դեռ մատղաշ հասակից թեքվել էր ու այդպես մեծացել։ Դրա համար էլ բարձրանալը շատ հեշտ էր։ Եվ Միքայելը բարձրացավ ու սկսեց վայելել հասած պտուղները։ Բայց դեռ ծառից չէր իջել, երբ անտառի եզրին, այգուն մոտիկ թփերի մեջ մի ուժեղ խշրտոց լսվեց։ Նա ուշադրությամբ քննեց այդ կողմը և պարզ նկատեց, որ մի հսկայական կենդանի ցանկապատը ջարդելով, տրորելով, մտավ այգին ու մոտենում է տանձենուն։ Մոտեցողը մի ահագին արջ էր։

Բրդոտը մոտեցավ ծառին և իր փնթի շարժումներով սկսեց վեր բարձրանալ։ Որ ճյուղին դիպչում էր, մի քանի տանձ էր թափվում. հավանաբար դրանք ամենահասածներն էին։

Ահա արջը հանգարտվեց, թաթը մեկնեց ու պոկեց խոշոր տանձերից մեկը, հետո մյուսը։ Պոկած պտուղը մեկնում, պահում էր լուսնի լույսի տակ, գլուխը թեքում, ուշադիր տնտղում, նոր միայն տանում բերանը։

Սկզբում Միքայելը գլխի չընկավ, թե ինչու բրդոտն այդպես է վարվում. բայց հետո կռահեց, որ արջը ստուգում է, արդյոք փտած չէ՞ տանձը։ Նա մտածում էր, որ երևի կկշտանա և վայր կիջնի։ Բայց արջն այդպես շուտ կշտանալու մտադրություն չուներ։ Խժռում էր ու վեր բարձրանում, իսկ Միքայելն արդեն վախենում էր. խիտ սաղարթների մեջ կուչ էր եկել ու շունչը պահած սպասում էր։

Հսկան մի քիչ էլ բարձրացավ։ Տղայի շնչառությունն արագացավ, ահա սաստկացավ, բայց նա դեն վանեց վախկոտությունը, նորից զսպեց իրեն ու էլի սպասեց։

«Եթե էլի բարձրանա, կորած եմ» մտածում էր նա։ Իսկ բրդոտն այնպես էր տարվել իր կողոպուտով, որ չէր էլ կասկածում, որ ճյուղերի մեջ մարդ կա թաքնված։

Երբ նա տանձերը խժռելով վեր բարձրացավ, քիչ էր մնում, որ Միքայելն ահից ցած ընկնի։ Հանկարծ նա հիշեց վաշտադանցի հին որսորդ Տիգրան պապի խոսքը, որ արջը բարձր գոռոցից չփոթվում ու փախչում է։

Եվ տղան սիրտ առնելով կռացավ ու որքան ուժ ուներ գոռաց արջի ականջին։

— Հա՜յ, հա՜յ, կորի՛ր...

Անակնկալի եկած արջը շփոթմունքից ցած գլորվեց ու ափալ-թափալ փախավ անտառը։

# ՄԵԾ ԴԱՆԻԱՑԻՆ



«Դե, սկսենք: Երբ հասնենք մեր այս պատմության վերջը, մենք ավելի շատ բան ենք իմանալու, քան այժմ գիտենք...»: Եվ այսպես, մենք մուտք ենք գործում Ձյունե թագուհու կախարդական աշխարհը: Այնտեղ հանդիպում ենք Կային ու Հերդային: Ձյունե թագուհին Կային տանում է իր ապարանքը, որի պատերը բքից էին, լուսամուտները ու դռները՝ մոլեգին մրրիկներից: Այնտեղ ցուրտ էր, ամայի, ուրախություն չկար: Փոքրիկ Հերդան ի՞նչ դժվարություններ ասես, որ չի հաղթահարում, մինչև փրկում է Կային: Որքա՞ն լավն է այս հեքիաթը, որքա՞ն սքանչելի: Իսկ գիտե՞ք, թե ով է այս հեքիաթի հեղինակը:

Դա աշխարհահռչակ հեքիաթագիր, դանիացի Հանս-Քրիստիան Անդերսենն է: Անդերսենը ծնվել է 1805 թվականին Ֆիոնիա կղզու Օդենսե փոքրիկ քաղաքում:

Ծովի ալեկոծությունը, գարնանային ջինջ երկինքը, հայրիկի ու տատիկի պատմած հեքիաթները, լեգենդները փոքրիկ Հանսի սրտում մեծ սեր արթնացրին դեպի գրականությունը: Նա օգնում էր իր կոշկակար հորը: Աղքատ էին ապրում նրանք: Մի կտոր հացի համար օրնիբուն չարչարվում էին: Իսկ ազատ ժամերին Հանսը ինքն իրեն հեքիաթներ էր պատմում: Նա շատ էր սիրում պատմել:

Հոր մահից հետո տասնչորս տարեկան Հանսին մայրն ուղարկեց Կոպենհագեն քաղաքը: Այստեղ նա երգում էր թատրոնում և, միաժամանակ, սովորում գիմնազիայում: Հետո անցավ թատերական ուսումնարան, այնտեղից էլ՝ համալսարան: Նա բուռն հափշտակությամբ մասնակցում էր գրական երեկոներին, համերգներին, ներկայացումներին:

Երբ տպագրվեց նրա բանաստեղծությունների առաջին ժողովածուն, բոլորը ջերմորեն ընդունեցին իր հետ գարնանային թարմություն բերող պատանուն:

Անդերսենը երգում էր հայրենիքի չքնաղ գեղեցկությունը, վերապատմում հորից ու տատից լսած լեգենդները: Շուտով տպագրվեց Անդերսենի լավագույն ստեղծագործություններից մեկը՝ «Հետիոտն ճանապարհորդություն Դոլմե ջրանցքից մինչև Ամակեր»:

Անդերսենը շատ է սիրել ճանապարհորդել: Նա եղել է եվրոպական երկրներում, Փոքր Ասիայում, Աֆրիկայում, գրել է տպավորությունների գրքեր, վեպեր, պիեսներ, բայց համաշխարհային հռչակ է ձեռք բերել առանձնապես իր հեքիաթներով: Ամբողջ աշխարհի ընթերցողներին հայտնի են Անդերսենի «Վայրի կարապները», «Անճոռնի բադիկը», «Մատնաչափը», «Անագե տոկուն զինվորիկը» և շատ ու շատ հիանալի հեքիաթներ: Այդ հեքիաթները վառ ու գրավիչ են, լցված լուսավոր ու զվարթ հումորով, անսահման մեծ սիրով դեպի բարին:

Անդերսենն իր ժամանակի կրթված մարդկանցից էր: Նրա բարեկամներն էին մեծ գրողներ Դիկկենսը, Հայնեն, մեծ երաժիշտներ Լիստը, Շումանը:

Անդերսենը մեծ գրող է, մեծ հումանիստ: Նրա արվեստը, նրա հեքիաթները թարմ են մնացել և դարեր շարունակ կմնան այդպես:

Աշխարհի ժողովուրդները սիրով են նշում մեծ դանիացու, մանուկների սիրելի գրողի ծննդյան 150-ամյակը:

*Դ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*

# ԿԱՌՈՒՑՈՒՄ ԵՆՔ

*Ս. ԽԱՐԱԶՅԱՆ*

Աշխատում ենք բակում,
Կառուցում նոր քաղաք,
Կառուցում ենք ակումբ,
Պիոներական պալատ:
Տրամվայ են շինում
Հրաչիկն ու Սեդան,
Արտոն հիմքն է դնում
Հինգ հարկանի մի տան:
Ես էլ ափին առվի
Կառուցում եմ կայան,
Որ մեր լույսը վառվի
Ամեն երեկոյան:
Ցեխն եմ հանում առվից,
Տուրբինի տեղ շինում,
Բայց մոտենում են ինձ՝
Աշխատանքից հանում.
Ասում են՝ տուն գնա,
Ծանր են գործերը մեր,
Ասում են՝ փոքր ես դու,
Դեռ չես կարող բանել:
Ձեռքիս բահը տարան,
Ինձ հանեցին գործից,
Բայց վաղ առավոտյան
Մեր տուն եկան նորից:
— Ների՛ր, ասին, Հայկա՛գ.
Նորից գործի արի,
Դու որ հոսանք չտաս՝
Տրամվայ չի լինի:

# ՎԱՐԴԳԵՍ ՍՈՒՐԵՆՅԱՆ

Հիսուն տարի սրանից առաջ, Ղրիմի Բախչիսարայ կոչվող փոքրիկ քաղաքի հնագույն այգիներից մեկում կանգնած էր յոթ տարեկան մի տղա և հիացած նայում էր շատրվանին։ Տուն վերադառնալով նա հիշողությամբ, բայց մանրամասն վերարտադրեց իրեն այդքան հիացմունք պատճառող շատրվանը։

Այդ երեխան ապագա հայ անվանի նկարիչ Վարդգես Սուրենյանն էր։

Աշխարհահռչակ ծովանկարիչ Հովհաննես Այվազովսկին նկատեց Վարդգես Սուրենյանի շնորհքը և քաջալերելու համար նրան յուղանկարներ նվիրեց։

Մեծ էր Սուրենյանի հրճվանքը։ Մեծ էր նրա սերը դեպի գեղանկարչությունը։ Հաղթահարելով նյութական բազմաթիվ զրկանքներ, նա սովորում է Մոսկվայի նկարչության, քանդակագործության և ճարտարապետության ուսումնարանում, ապա Մյունխենի Գեղարվեստների ակադեմիայում։

Վերադառնալով Մոսկվա, Վարդգես Սուրենյանն իր ստեղծագործությամբ կապվում է ռուս առաջավոր ռեալիստ նկարիչների՝ պերեդվիժնիկների ընկերության հետ։

Վարդգես Սուրենյանի պատմական և կենցաղային մի շարք նկարների համար նյութ է ծառայում հայ ժողովրդի հերոսական անցյալը, ինչպես նաև նրա տառապանքը։ Այդ նկարները լի են հայրենասիրությամբ, համակված դեպի հայ ժողովրդի լավագույն ապագան և աչքի են ընկնում կատարման վարպետությամբ։

Վարդգես Սուրենյանը շատ աշխատասեր, շնորհալի և կրթված անձնավորություն է եղել։ Գեղանկարչական աշխատանքներից բացի, նա կատարել է բազմաթիվ թարգմանություններ, որպես թատերական նկարիչ՝ աշխատել է Մոսկվայի Գեղարվեստական թատրոնում, եղել է ճարտարապետ, քանդակագործ, արվեստի տեսաբան, հասարակական գործիչ։ Նա եղել է գրքի վարպետ նկարազարդող։ Նրան են պատկանում Ա. Ս. Պուշկինի «Բախչիսարայի շատրվանը» պոեմի նկարազարդումները, որ լույս է տեսել դեռևս 1899 թվականին։

Վարդգես Սուրենյանը նկարազարդել է հայկական ժողովրդական մի շարք հեքիաթներ։ Հայաստանի Պետական պատկերասրահում պահպանվում են «Մոխրոտը», «Արևհատն ու օձամանուկը», «Իմաստուն օձը», ինչպես նաև Հովհաննես Թումանյանի «Դառնիկ ախպերը» և այլ հեքիաթների նկարազարդումները։

Վարդգես Սուրենյանը մեռավ Յալթայում, 1921 թվականին, վաթսունմեկ տարեկան հասակում։

*Մ. ՂԱԶԱՐՅԱՆ*



*«Դառնիկ ախպերը» հեքիաթի նկարներից մեկը։*



*«Բախչիսարայի շատրվանը» պոեմի տիտղոսաթերթը։*

# ՍԵԴՐԱԿԻ ՕՐԸ

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. Հ. ՇԱՎԱՐՇԻ

*(Պատկեր)*

**ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՔ**

Սեդրակ, մայր, տղաներ, աղջիկներ, խումբ։

1-ԻՆ ԵՎ 2-ՐԴ ՏՂԱ.— *Կա մի քաջ տղա, անունը՝ Սեդրակ։*
*Սեդրակը ունի և՛ գիրք, և՛ տետրակ...*

3-ՐԴ ՏՂԱ.— *Ամեն ինչ ունի,*
*Ամեն ինչ ունի,*
*Բայց գիտե՞ք, թե ինչ...* (պաուզա)
*Ժամանա՜կ չունի։*

ԽՈՒՄԲ.— *Ժամանա՜կ չունի...*

ԱՂՋԻԿՆԵՐ.— *Դպրոց գնալիս*
*Կամ թե տուն գալիս,*
*Բերանը բաց-բաց*
*Մնում է կանգնած*
*Այս պուրակի մոտ,*
*Այն ծորակի մոտ...*

ՏՂԱՆԵՐ.— (Առաջ գալով) *Հենց տեսավ ավտո,*
*Կասի՝ — Դե լավ, տո՜,*
*Ու չե՞մ ուշանա...*
*Եվ կանգնում է նա։* (Ցույց են տալիս, թե ինչպես Սեդրակը շոշափում է մեքենան, պտտվում ավտոյի շուրջը)։



1-ԻՆ ԵՎ 2-ՐԴ ՏՂԱ.— *Թող լինի տասնութ*
*Կրպակ ու խանութ,*
*Ի՞նչ փույթ Սեդրակին.*
*Կկանգնի կրկին.*
*Կդիտի երկար*
*Խաղալիք, նկար...*

1-ԻՆ ԵՎ 2-ՐԴ ԱՂՋԻԿ.— *Հետո խաղալով*
*Ու թռչկոտելով*
*Կգնա առաջ...*

ԽՈՒՄԲ.— *Դա Սեդրա՜կն է քաջ...*

4-ՐԴ ՏՂԱ.— (Բաց պայուսակը թափ տալով բեմ է վազում։ Պայուսակից թափվում են գրչամանը, ռետինը, ապակու կտորներ։ Տղան հավաքում է, լցնում պայուսակն ու առաջ է գալիս)։
*Վերջը հերիք,*
*Ուրախ ու թեթև,*
*Առաջին դասին*
*Հասնում է... տասին...*

ԽՈՒՄԲ.— (Ծիծաղ) *Հա՛-հա՛-հա՛-հա՛-հա՛,*
*Հա՛-հա՛-հա՛-հա՛-հա՛...*
*Առաջին դասին՝*
*Ճիշտ ժամը տասի՜ն...*

4-ՐԴ ՏՂԱ.— (Մոտենում է դպրոցին, բռունցքներով բախում է դուռը, նայում է լուսամուտից ներս)։

3-ՐԴ ԱՂՋԻԿ.— *Հապա իր տա՜նը...*

ԽՈՒՄԲ.— *Հա, հա, հա... տա՜նը...*

3-ՐԴ ԱՂՋԻԿ.— *Դե տեսեք ինչն է նրա մեծ բանը։*
*Խաղում է, խաղում և հետո՝ դասի...*

ԽՈՒՄԲ.— *Դե՛, Սեդրա՛կ, հասիր...*

ԱՂՋԻԿՆԵՐ.— *Ով նրան կանչի՝*
*Ճաշ դուրս կթռչի,*
*Թողած թուղթ, գրիչ.*
*Քանոն ու սրիչ.*
*Եվ իրար խառնած գրքեր ու տետրակ...*

ԽՈՒՄԲ.— *Ախ դու, ա՛խ, Սեդրա՜կ,*
*Ախ դու, վա՛խ, Սեդրա՜կ...*

ՄԱՅՐ.— (Առաջ է գալիս) *Մութն ընկավ թե չէ.*
*սպասում եմ՝ Սեդրա՜կ,*
*Արի կարգի բեր քո գիրք ու տետրակ.*
*Սեդրակն ասում է...*

ՍԵԴՐԱԿ.— (Բեմի հետևից) *Գալիս եմ, հիմա.*
*Դեռ շուտ է, մամա՜...*

ՄԱՅՐ.— *Այդ «հիման» արդյոք ե՞րբ կվերջանա։*
*Տասին կանչում եմ՝ Սեդրակը չկա,*
*Իսկ տասնմեկին... Ահա՛, ահա նա։*

ՍԵԴՐԱԿ.— (Բեմ է գալիս մազերը գզգզված, մայկան շալվարի վրա կախված)
*Ֆուտբոլ խաղացի...*
*Թաս տրամվայ.*
*Բայց շատ հոգնեցի,*
*Հոգնեցի... վա՜յ, վա՜յ...*

ԽՈՒՄԲ.— (Հեգնական) *Հա, հա, ի՞նչ կա որ.*
*Շատ կա ուրիշ օր...*
(Սեդրակը խեթ-խեթ նայում է խմբին և շփոթվում է)...

ՄԱՅՐ.— (Սեդրակին) Ո՞ւր է գդալս...

ՍԵԴՐԱԿ.— (Քրտինքը ճակատից սրբելով նստում է մառանի վրա)
«Հայրենասերը»,
Մարդ մասերը... (Ձեռքը թափահարում է, հառաչում: Բոլորը ծիծաղում են: Սեդրակը նայում է նրանց և մի փոքր ուղղում իրեն):

ՏՂԱՆԵՐ.— (Պարով շրջապատում են Սեդրակին):
Ժամերդ կորան,
Ուժերդ տարան,
Էլ ինչպե՞ս պիտի գնաս դասարան։

ՍԵԴՐԱԿ.— (Նստելով ճեծանին, անփույթ)
Կգրի Ժորան,
Կլուծի Նորան,
Կհուշի Կարոն,
Կկարդա Սարոն... (Ուզում է քշել, գնալ, բայց աղջիկների շղթան չի թողնում):

ԿԱՐՈ.— Էլ հիմար չեմ ես,
Սովորեմ՝ տամ քեզ։

ՍԱՐՈ ԵՎ ԿԱՐՈ.— Դու էլ մեզ նման
Գինդ կպիր ուսման.
Օրդ կարգի բեր՝
Կստանաս հինգեր։

ԽՈՒՄԲ.— Օրդ կարգի բեր,
Կստանաս հինգեր (խիտ շարքով շրջապատում են Սեդրակին):

ՍԵԴՐԱԿ.— (Զգիտի, թե ուր փախչի: Նախանձով նայում է բոլորին. տխուր)
Տարին եղավ կես,
Ո՞նց հասնեմ ես ձեզ...

1-ԻՆ ԱՂՋԻԿ.— Փողոցից քաշվիր,
Ժամերդ հաշվիր,
Ե՛վ դասդ կանես,
Ե՛վ գործ կտանես,
Ե՛վ գիրք կկարդաս,
Ե՛վ խաղ կխաղաս... (Սեդրակն ականջները փակում է ու ծիծաղելի շարժումներով աշխատում է դուրս պրծնել ընկերների շղթայից):

ԽՈՒՄԲ.— (Մեկը մեկի մեջքը պինդ գրկած Սեդրակի շուրջը պարում ու երգում են)
Մենք չենք թողնի մնաս մենակ,
Իզուր վատնես ժամ, ժամանակ.
Խելք հավաքիր, քանի ուշ չէ,
Կորած տարին ետ չի գա, չէ...

ՍԵԴՐԱԿ.— (Իրեն իրեն ոտից գլուխ նայելով ու մազերը կարգի բերելով)
Ձեր գլուխը շատ մի՛ գովեք.
Ոնց որ թե դուք խելքի ծով եք...
Ես ձեզանից պակասը չեմ,
Որ ետ մնամ, գնամ կորչեմ։ (Սրբում է քթի մուրը, մայկան ներս դնում ու ճղարտ կեցվածք ընդունում):

ՄԱՅՐ.— (Հայելին դեմ է անում տղային)
Բայց չեմ թողնի, չեմ թողնի ես՝
Կեղտոտ-մրոտ դու տուն մտնես,

ՍԵԴՐԱԿ.— (Խլում է հայելին ու նայում է).
Դե լավ էլի՜, բավական է
Թուք ու մուր։
Հիմա գնամ իսկույն բերեմ
Մի դույլ ջուր,
Լավ լվացվեմ, դասավորեմ
Գիրք, տետրակ... (բարկացած նայում է ընկերներին).



Որ էլ չասեն ինձ թաթխված,
Վատ Սեդրակ...

ԽՈՒՄԲ.— (Աշխույժ պարով ու ծիծաղով)
Մեր դասընկեր Սեդրակին,
Շարք կբերենք մենք կրկին,
Ժամ չի վատնի էլ երբեք,
Չի ստանա երկուս, մեկ։
(Մի տղա Սեդրակին հաշում է պարի մեջ: Սեդրակը դույլ-դույլ փոխում է ոտները):
Սեդրա՛կ, մեզ հետ կարգին արի,
Էլ չես մնա ոչ մի տարի։
Բոլորս այսպես մեկտեղ, թափով,
Քեզ կտանենք ուղիղ ճամփով,
(Նստանդուն շուրջպար):

## ՏԱՏԻԿԻ ԲՈՏԻՆԵՐԸ

Ա. ԴԱՐԲՆԻ

Տատն ուզում է գնալ շուկա,
Բայց արի տես՝ բոտիների մեկը չկա։
Թոռն ասում է Զալ փիսոյին.
— Դե՛, շուտ արա, հիմա՛ր, կատու,
Բոտու մեկը ո՞ւր տարար դու։
Լավ իմացիր՝ տատի բոտին
Մեծ կլինի քո չորս ոտին։
Թե՞ շնիկն է տարել բոտին.
Ես ցույց կտամ այդ քոթոթին։
— Կարե՛ն, Կարե՜ն,— տատն է կանչում,—
Մեր փիսիկին զուր ես տանջում.
Փիսոն պոչով ասում է քեզ,
Թե իմ բոտին որտեղ գտնես...
— Շատ խելոք է իմ փիսիկը.
Ո՞վ է տարել,
Արջի՞կը, թե՞ Լուսիկը։
— Չէ՛, չէ՛, Կարե՛ն դու ես տարել։
Հապա նայիր՝
Ա՛յ, իմ բոտին՝
Քո ձախ ոտին։
Խաղով տարված՝ չես նկատում։
Չարը դու ես, ոչ թե կատուն...
Մեր Կարենը լուռ նայում է,
Ու զարմանում,
Շուտ նստում է,
Բոտին հանում։
— Մոռացել եմ. ա՛յ քեզ օյի՜ն...
Ու շոյում է իր փիսոյին։

## ԱՐԵՎԵԼՅԱՆ ԱՐՄԱՎԵՆԻ

Լ. ԷՆՖԻԱՋՅԱՆ

(Բիոլոգիական գիտությունների թեկնածու)

Ուշ աշնանը, երբ խնձորենու, տանձենու, սալորենու և այլ պտղատու ծառերի բերքը վաղուց արդեն հավաքված է լինում, մեր ռեսպուբլիկայի որոշ շրջաններում կարելի է տեսնել մի նոր ծառատեսակ, որն աչքի է ընկնում իր գեղեցիկ, ոսկեգույն, նարնջի նման պտուղներով։

Դա արևելյան արմավենին է, որի հայրենիքը Չինաստանն է։ Արմավենին մեծ չափերով տարածված է



նաև Կորեայում, Ամերիկայում, Յապոնիայում և այլ երկրներում։ Սովետական Միության մեջ արևելյան արմավենին մեծ տարածություններ է զբաղեցնում Վրաստանում, Ադրբեջանում, Կրասնոդարի երկրամասում, Ղրիմում, Միջինասիական ռեսպուբլիկաների առանձին շրջաններում, ինչպես նաև մեզ մոտ՝ Հայաստանում։

Արևելյան արմավենու պտուղները համեղ են, սննդարար, հարուստ են վիտամիններով և շատ օգտակար են մարդու օրգանիզմի համար։ Թարմ վիճակում նրանք իրենց մեջ պարունակում են տասնհինգից մինչև տասնութ տոկոս շաքար, իսկ չորացնելու դեպքում՝ հիսուն։ Արմավից պատրաստում են կոմպոտ, քաղցրավենիներ, ըմպելիքներ։

Արևելյան արմավենի կա Իջևանի շրջանի Ուզունթալայի պետական տնկարանում։ Ծառերը բերվել են Ադրբեջանի մերձարևադարձային կուլտուրաների փորձնական կայանի Գեոկչայի հենակետից, 1939 թվի գարնանը։ Այժմ նրանց բարձրությունը հասնում է մոտ հինգ մետրի. հասունացել է նաև բունը։ Մի ծառը տալիս է հինգհարյուրից մինչև հազար երեք հարյուր լավորակ պտուղ։ Բարձր բերքատվության պատճառով անհրաժեշտ է լինում դնել հենակներ, որպեսզի ճյուղերը չկոտրվեն։

Արևելյան արմավենին իր աճման համար պահանջում է մեծ քանակությամբ ջերմություն, չի դիմանում ձմեռվա ուժեղ ու երկարատև սառնամանիքներին. այդ պատճառով էլ այժմյան տեսակները հնարավոր է տարածել մեր ռեսպուբլիկայի միայն Իջևանի, Շամշադինի, Ալավերդու, Հոկտեմբերյանի, Գորիսի, Ղափանի ու Մեղրու շրջանների ամենամեղմ և տաք կլիմա ունեցող վայրերում, ցուրտ քամիներից ու հոսանքներից պաշտպանված տեղերում։

*Արևելյան արմավենին փորձարկված է նաև Ալավերդու շրջանի Ճոճկան, Իջևանի շրջանի Աչաջուր գյուղերի կոլտնտեսություններում, Մեղրիում։*

*Կոլտնտեսականները մեծ հետաքրքրություն են ցուցաբերում այդ արժեքավոր կուլտուրայի նկատմամբ։ Նրանք կորոնապատվաստի միջոցով ազնվացնում են տեղական արմավենիները։*

*Հայաստանի հյուսիսային շրջաններում կորոնապատվաստը կատարվում է ապրիլի վերջերին, տեղական արմավենու երկուսից մինչև երեք տարեկան ծառերի վրա։*

*Տարեցտարի արևելյան արմավենին ավելի լայնորեն է տարածվում մեր երկրում։*

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ՂԱՐԱԲԱՂՅԱՆ ՊՈԵՄ»

Հայպետհրատի հրատարակությամբ լույս է տեսել Լևոն Հուռունցի «Ղարաբաղյան պոեմը»։

Այդ գրքում պատկերված է Ղարաբաղում ապրող հայերի և ադրբեջանցիների ծանր կյանքը նախասովետական շրջանում։ Սակայն հեղինակի հիմնական նպատակն է եղել ցույց տալ հայերի և ադրբեջանցիների եղբայրությունն ու համատեղ պայքարը ազատության համար։

Ղարաբաղի Նգեր գյուղի խրճիթներից մեկում, հողե հատակին նստած՝ երեխաները դաս էին սովորում։ Միասին էին պարապում թե՛ առաջին դասարանցիները, թե՛ բարձր դասարանների աշակերտները։ Հաշմանդամ ուսուցիչը՝ ծերունի Միքայելը, մերթ այս, մերթ այն խմբին էր մոտենում, խորհուրդներ տալիս։ Դա գյուղի գաղտնի դպրոցն էր։ Աշակերտներից մեկը չարաճճի պահվածքով... շարունակ պահակություն էր անում, քանի որ ոստիկանությունը կարող էր անսպասելիորեն վրա տալ, հայտնաբերել «դպրոցի» գոյությունը և խեղճ ծերունուն... խեղճ ծերունուն։ Եվ իրոք, այս անգամ խուրամանկ ոստիկանները հանկարծակիի բերին։ Միքայելը չկարողացավ թաքնվել։ Ոեմքին հայտնվեցին երեք ոստիկան, վրա պրծան, ոլորեցին ուսուցչի թևերը և կապկպած առաջ հրեցին։ Առանց հենակի չկարողանալով կանգնած մնալ, Միքայելը բերանքսիվայր ընկավ հատակին...




...Անցնում են օրեր։ Ղարաբաղի հեռավոր գյուղերում ռևոլյուցիոն թռուցիկներ են տարածվում։ Ոստիկանությունը որոնում է Ազիզբեկովին և մյուսներին։ Նգեր գյուղում բնակիչների հետ բնդհարվելիս սպանվում են ցարական պրիստավն ու երկու ոստիկան։ Բազմաթիվ գյուղացիների ձերբակալում են, աքսորում Սիբիր։

Սանր է նաև հարևան ադրբեջանցիների վիճակը։ Եղբայրական երկու ժողովուրդները ձեռք-ձեռքի տված՝ պայքարում են իրենց ազատության համար։ Պարտիզանական ջոկատներում միասին են գործում ադրբեջանցիներն ու հայերը։ Մեծահասակներին հետևում են պատանիները։ Նրանք գաղտնի թռուցիկներ են տարածում, օգնում պարտիզաններին։

Սկսվում են սովն ու տառապանքները։ Երեխաները տներից փախչում են և գյուղից-գյուղ ընկած՝ հաց մուրում։ Բայց ո՞վ հաց կտա. հարուստները դռները են փակում, իսկ չքավորները իրենք են քաղցից տանջվում։

Թյուրքական զորքը վրա է տալիս։ Դաշնակցականները, որոնք իրենց համարում էին «Հայ ազգի փրկիչներ», իրենց գլուխն են ազատում։ Պարտիզանական ջոկատները խիզախորեն մարտնչում են թե՛ թյուրքերի, թե՛ դաշնակցականների դեմ...

Ժողովուրդն անհամբեր սպասում է Կարմիր Բանակի գալուն։ Շատերը կրտսերներին են քնում, որպեսզի հեռվից տեսնեն մոտեցող զորքը։

Դալիս է երջանիկ օրը։ Կարմիր Բանակի զորամասերը մտնում են Ղարաբաղի գյուղերը։ Ռուս զինվորներին ամենուրեք ընդունում են իբրև հարազատների։

Ղարաբաղում հաստատվում է Սովետական իշխանություն։ Տանջված գյուղացիներն առաջին անգամ հող են ստանում։ Պատանիներն ու աղջիկներն ընդունվում են Կոմերիտմիության շարքերը։ Սկսվում է նոր, երջանիկ կյանք։

Այս ամենի մասին դուք մանրամասնորեն կիմանաք «Ղարաբաղյան պոեմ» գիրքն ընթերցելիս։ Կարդալով այս գիրքը դուք կիմանաք, թե ի՞նչ թանկ գնով է ձեռք բերած մեր նոր, ազատ կյանքը և այն ավելի կսիրեք։

# ՄԱՅԻՍՅԱՆ ԵՐԳ

Խոսք՝ Վ. ՄԽԻԹԱՐՅԱՆԻ

Երաժշտություն՝ Վ. ԱՐԱՐԱՏՅԱՆԻ

Allegro giocoso

ՄԵՆԱԿ

Ա - րևն է վառ շող - շո - ղում, դաշ - տե - րն են փող - փո - ղում.

ԽՄԲՈՎ

Մա - յի - սյան այս մեծ տո - նին, Մենք քայ - լում ենք մի - ա - սին; Մա - յի - սյան այս մեծ տո - նին, Մենք քայ - լում ենք մի - ա - սին: - նին:

Արևն է վառ շողշողում,
Դաշտերն են փողփողում,
Մայիսյան այս մեծ տոնին
Մենք քայլում ենք միասին:

Տաղիկներ ենք նոր կյանքի,
Մանուկներ ենք բերկրանքի.
Հայրենիքում փառապանծ
Սովորում ենք գերազանց:

Սովետական աշխարհում,
Երջանիկ ենք մենք ապրում,
Ինչպես արևը գարնան,
Ժպտում է մեզ ապագան:

Շեփոր, թմբուկ զարկեցեք,
Ուրախ, հաստատ քայլեցեք,
Սովետական մանուկներ,
Չքնաղ երկրի զավակներ:

# ՁԱՐԹՈՆՔ

*ՍԱՐՄԵՆ* *Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ*

Գնաց ձմեռ ծերունին,
Եկավ գարունը կանաչ,
Հավքը քաշեց իր բնին,
Լսվեց ջրի մեղմ կարկաչ:
Ծիծաղեցին ծառերը՝
Ծաղկի ծովի մեջ կորած,
Ու բարձրացան սարերը
Թե՛ հովիվ, թե՛ գառնարած:
Ծվիների ձայնն անուշ՝
Սար ու ձորերը լցրեց,

Մեր բարակած, մեր անուժ
Գետը նորից վարարեց:
Նորից հնչեց հերկողի
Երգը ծանոթ ու խնդուն,
Քաղցր բուրմունքը հողի
Մարդու հոգին է դյութում:
Զրնգում են դաշտերում
Ե՛վ տրակտոր, և՛ գութան,
Ու լսվում է ամենուր.
— Ողջո՜ւյն, զարթնող բնության:

## ԳԱՐՆԱՆԱՑԻ՛Ն ԱՌԱՎՈՏ

*ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

Ծիծեռնակն իր բույնն է հյուսում
Փոքրիկ, բարակ շյուղերից,
Սոխակն անուշ երգ է ասում
Ծառի կանաչ ճյուղերից:

Երկու ճերմակ արագիլներ
Նախկին բույնն են նորոգում,
Ինչքա՜ն-ինչքա՜ն աղավնիներ
Սավառնում են ջինջ օդում:

Գարնան բույրն է ներս թափանցել
Պատուհանից ամեն տան.
Ծաղիկներն են թերթեր բացել
Լցված ցողով վաղորդյան:



# ՈՍԿԵ ԿՈՒՌՔԸ

*(Հեքիաթ)*

*ՆԱԶԻՄ ՀԻՔՄԵԹ*

Հին ժամանակ ինչ-որ երկրում ապրում էր սպիտակամորուք մի ծերունի: Աշխարհով մեկ տարածվել էր, որ նրա իմաստությունը գերազանցում է բարությանը, իսկ բարությունը չի զիջում իմաստությանը:

Այն քաղաքում, որտեղ ապրում էր բարի իմաստունը, բազմամարդ հրապարակում հազարումեկ մարդու բարձրությամբ մի կուռք էր կանգնած. նրա աչքերը թանկագին քարերից էին, մազերը՝ անխառն արծաթից, իսկ իրանը ձուլված էր ոսկուց: Եվ այդ երկրի ժողովուրդը կուրորեն երկրպագում էր կուռքին, հավատում, որ նա է ստեղծել երկրի չարն ու բարին, հարստությունն ու չքավորությունը, գեղեցկությունն ու այլանդակությունը...

Եվ միայն սպիտակամորուք ծերունին էր, որ չէր երկրպագում կուռքին, որովհետև չէր հավատում նրան:

Երկար ժամանակ նա գաղտնի էր պահում իր անհավատությունը, թաքցնում հոգու խորքում, բայց տարեց տարի դժվարանում էր պահել իր գաղտնիքը. դա քարի պես ճընշում էր նրա սիրտը:

Եվ ահա մի անգամ, այլևս չդիմանալով, նա եկավ հրապարակ, որտեղ կուռքի արձանն էր կանգնած և դիմեց ժողովրդին.

— Ինչո՞ւ եք երկրպագում. աչքերը թանկագին քարերից, մազերը արծաթից, իրանը ոսկուց պատրաստած այս կուարձանին: Մի՞թե ինքներդ չեք կանգնեցրել նրան այս հրապարակում: Դուք կարծում եք, որ ձեզ կուռքն է ստեղծել. բայց չէ՞ որ նա ինքը ձեր ձեռքերի ու երևակայության արդյունք է: Դեն, փշրեցեք կուռքը, ո՛վ իմ հայրենակիցներ:

Բարի և իմաստուն ծերունուն լսող մարդիկ նախ չհասկացան նրան, ապա զարմացան, այնուհետև զայրացան և վերջապես, գետնից հսկա քարեր վերցրին ու սկսեցին նետել ծերունու վրա: Սակայն նա շարունակում էր խոսել: Նրա ալեզարդ մորուքը ներկվեց արյունով: Նա էլի չլռեց:

Եվ այդ ժամանակ հրաշք կատարվեց. քարերի կարկտի տակ ճշմարտության խոսք ասող ծերունին հանկարծ սկսեց երիտասարդանալ... Ինչքան երիտասարդանում, այնքան ձայնը ուժեղանում էր. և նա էլ ավելի բարձր էր խոսում:

Իսկ նրանք, ովքեր նրա վրա քարեր էին նետում, արագ ծերանում էին. նրանց մեջքը կորանում, ձեռքերը դողում, աչքերը արտասուքով էին լցվում: Նրանք այլևս անզոր էին կուռքեր կանգնեցնելու:

Ահա այդ ժամանակ երիտասարդացած իմաստունը բռունցքի մի հարվածով տապալեց հսկա կուռքը, որ հազարումեկ մարդու հասակ ուներ:

***

Եվ երբ դու միշտ խիզախաբար պաշտպանես ճշմարտությունը, չվախենալով քարկոծվելուց, ապա դու ևս, այն բարի իմաստունի պես, որ մի ժամանակ ապրել է աշխարհի երկրներից մեկում, կարժանանաս հավերժ երիտասարդության և կխուսափես մահից:

*Թարգմ. Բ. ՋՈՒԽԱՍԶՅԱՆ*




# ԽԱՂ

## ԾԱԾԱ՛ՆԻՐ ԴՐՈՇԸ

Այս անգամ դրուժինայի նավամույթում խաղերն անց կացրեց ֆիզկուլտուրայի դասատու ընկեր Ավետիսը:

Նա նախապես գծել էր վազքուղիները, ստարտը, իսկ ֆինիշի տեղում կանգնեցրել էր մոտ երեք մետր բարձրություն ունեցող մի պատվանդան, որը երկու կողմից աստիճաններ ուներ: Ավետիսի պահանջով նրան մոտեցան երկու աղջիկ:

— Առաջին վազքուղին պետք է անցնել կուզեկուզ,— բացատրեց ընկեր Ավետիսը,— ճանապարհի կեսը պետք է գնալ մեկ ոտքով, իսկ մնացած մասը՝ պարկերով:

Այս ասելով նա վազքուղու այն մասում, որը պետք է անցնեին պարկերով, դրեց երկու պարկ:

— Ով շուտ կհասնի վերջին, կբարձրանա պատվանդանի վրա ու դրոշը կծածանի, նա էլ հաղթող կլինի:

Խաղն սկսվեց:

Հետո Ավետիսը որոշ փոփոխություններ մտցրեց խաղի մեջ:

Վազքուղիների վրա մի տեղում դրեց վաթսուն սանտիմետր տրամագծով ու մեկ մետր երկարությամբ ֆաներայից պատրաստած երկու խողովակ: Երկրորդ մասում՝ երկու բանկան, իսկ վերջում կանգնեցրեց երկու փոքրիկ պիոների:

— Պետք է անցնել խողովակի միջով,— շարունակեց Ավետիսը,— արագ կերպով հագնել բանկաները, շալակել պիոներներին և հասցնել պատվանդանի մոտ, ապա բարձրանալ պատվանդանի վրա և ծածանել դրոշը:

— Իսկ մենք ինչպե՞ս ենք վազելու՝ ուղիղ դիրքով, երկու ոտքով, թե՞ կուզեկուզ,— հարցրեց Սուրիկը:

— Առաջին մասը կանցնենք կուզեկուզ, երկրորդը՝ մեկ ոտքով, իսկ երեխաներին շալակած ժամանակ՝ սովորական դիրքով,— բացատրեց դասատուն:

Նա օդում թափահարեց կարմիր դրոշը, Սուրիկն ու Խաչիկը պոկվեցին ստարտից:

Խաղից հետո ընկեր Ավետիսը բացատրեց, որ կարելի է օգտագործել նաև տարբեր արգելակներ: Կարելի է կազմակերպել էստաֆետային ձևով. ավելի հետաքրքիր կլինի:

Վ. ՓԵՏՐՈՍՅԱՆ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱ՛Ն ԽՆԴԻՐ




*Գտնել, թե ի՞նչ թերակղզիներ են.*

*1, 2, 3, 7 — գտնվում են Ասիայում, 4, 5, 6, 9 — Եվրոպայում, 8, 10 — Ամերիկայում:*

*ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ.— Մասշտաբները տարբեր են:*

Կազմեց՝ Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

## ՄՏԱԾԻՐ ԵՎ ԳՏԻՐ

1.

Սարգիսն ինձանից խնդրեց գրպանի լապտերի մարտկոց:

— Միայն նորը,— զգուշացրեց նա:

Ես նրան տվեցի բոլորովին նոր մարտկոց:

— Հիմա ես կստուգեմ, իրոք նորն է, թե՞ ոչ,— ասաց նա. բայց գրպաններն ստուգելուց հետո գլուխը տարուբերեց.

— Ափսոս, էլեկտրալամպը մոտս չէ:

— Սրան նայեցեք, իրեն գյուտարար է համարում. երբ էլեկտրալամպ չկա, չի՞ կարելի ստուգել, ի՞նչ է,— հարցրի ես:

— Իհարկե՝ կարելի է:

Այս ասելով Սարգիսը մարտկոցը տարավ դեպի բերանը և լեզուն կպցրեց թիթեղներին:

— Կծվությունը ուժեղ է, ուրեմն նորն է:

Կարո՞ղ եք ասել, թե ինչո՞վ է բացատրվում այդ կծվությունը:

2.

Կցուկ ունեցող ավտոմեքենայով պետք էր տեղափոխել ծանր հաստոց: Մեքենավարն ասաց, որ լավ կլինի հաստոցը տեղավորել մեքենայի թափքում:

— Իզուր ես դու այդպես ասում,— նկատեց մյուս մեքենավարը:— Ավելի լավ կլինի բեռը տեղավորել կցուկի վրա:

Մեքենավարները սկսեցին վիճել:

Ո՞ւմ ասածն է ճիշտ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. Ա. ՍՈՒԽՈՐՈՎԱՅԻ




*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 09997, Պատվեր 284, Տիրաժ 5000, Տպագրական 3½ մամուլ, Ստորագրված է տպագրության 31.III.1955 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65,*






# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## ՀԱՅՐԵՆԱՍԵՐ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ

*Երբ որ մեռնեմ, աստված սիրեք,*
*Արձանի տեղ, շիրմիս վրա*
*Լոկ մի կտոր չոր հաց դրեք,*
*Վրան գրած՝ քաղցից մեռավ:*

Այսպես ծանր է ներկայացրել Ծատուրյանը հայ գրողի վիճակն անցյալում: Այսպես ծանր է եղել հենց Ծատուրյանի կյանքը: Ի՞նչ աշխատանք ասես, որ չի կատարել Ծատուրյանը վաղ մանկությունից: Մի կտոր հաց վաստակելու համար եղել է ճանապարհներին քար ջարդող բանվոր, լաբորանտ, գործակատար...

Ալեքսանդր Ծատուրյանը ծնվել է 1865 թվականի ապրիլի քսաներեքին



Զաքաթալա քաղաքում, ձկնավաճառի ընտանիքում: Ծատուրյանը չորս տարեկան հասակում զրկվել է հորից և մնացել մոր խնամքին: Սկզբում սովորել է Զաքաթալայի ծխական դպրոցում, իսկ հետո՝ քաղաքային ուսումնարանում:

Շատ չանցած մեռնում է նաև Ծատուրյանի մայրը: Որբացած, անօգնական Ծատուրյանը զրկվում է ուսում ստանալու հնարավորությունից:

Գյուղագիր Արշակ Ազատյանն ապագա բանաստեղծին իր ընտանիքի հետ տանում է Թիֆլիս: Այստեղ Ալեքսանդրը ուսումը շարունակելու համար դիմում է մի շարք տեղեր: Մեծ դժվարությամբ նրան հաջողվում է ընդունվել Թիֆլիսի Միքայելյան արհեստագիտական դպրոցը: Բայց այստեղ նա երկար չի մնում: Այնուհետև Ծատուրյանը իր կիսատ թողած ուսումը լրացնում է ինքնակրթությամբ և դառնում է հայոց լեզվի ուսուցիչ Նիժնի-Նովգորոդի հայ ընտանիքներից մեկում: Այդ ընտանիքի հետ Ծատուրյանը տեղափոխվում է Մոսկվա:

Ծատուրյանը գրել սկսել է դեռևս պատանի հասակից: Նա պատկանում էր այն դեմոկրատ բանաստեղծների թվին, որոնք պատկերել են աշխատավորության չարքաշ ու թշվառ կյանքը: Հայրենասեր հեղինակը ելքը տեսնում էր պայքարի մեջ:

Ծատուրյանի ստեղծագործության գագաթը «Բանվորուհու օրորը» բանաստեղծությունն է, որը գրված է 1905 թվականի ռևոլյուցիայի ազդեցության տակ: Դա ոչ թե սովորական օրոր է, այլ տիրողների դեմ նախապատրաստվող մի նոր կռվի երգ:

«Դեշի հանքերում» հեղինակը ծաղրում է բուրժուական այլանդակ բարքերն ու կենցաղը:

Ալ. Ծատուրյանը միաժամանակ լավ թարգմանիչ էր: Նա թարգմանել է ռուս և եվրոպական հեղինակների՝ Պուշկինի, Լերմոնտովի, Տուրգենևի, Նեկրասովի, Հայնեի, Բայրոնի և ուրիշների շատ գործեր:

Ապրիլին լրանում է բանաստեղծի ծննդյան իննսուն տարին:

## ՆՇԱՆԱՎՈՐ ԳՐՈՂԸ

1913 թվականին գրասերների մի խումբ որոշեց տոնել հայ նշանավոր գրող Վրթանես Փափազյանի գրական գործունեության հոբելյանը: Բայց այդ հոբելյանը բուրժուազիայի և դաշնակների մեղքով խափանվեց: Փափազյանն այդ առթիվ գրում է. «Ի՞նչ հոբելյան, ո՞ւմ համար, ի՞նչ. որ շնորհք չեմ ունեցել հարուստների պնակները լիզել... Ո՛չ, մի սպասիր...»

Ծանր էր Փափազյանի կյանքը դաշնակների տիրապետության օրոք: Երեսունհինգ տարի առաջ, 1920 թվականի ապրիլին գրողը մեռավ տիֆից՝ Երևանի հիվանդանոցում:

Վրթանես Փափազյանը ծնվել է Վանում 1866 թվականին: Նրա հայրը սիրում էր գրականությունը: Այդ սերը նա փոխանցեց Վրթանեսին:



Փափազյանները ընտանիքով թողնում են Վանը և գալիս են Պոլիս, հետո Թավրիզ: Վրթանեսը սովորել է Էջմիածնի ճեմարանում, ապա կրթությունը շարունակել է Բաքվում, Պոլսում, Ժնևում, Մոսկվայում:

Երկար շրջագայությունից հետո Փափազյանը վերադառնում է Հայրենիք: Թափառումները նրան շատ նյութ տվին: Նա կյանքի մեծ փորձ ձեռք բերեց, որը օգնեց նրան ավելի լավ պատկերելու կյանքը:

Փափազյանին գրողի հռչակ բերեց 1891 թվականին տպագրած «Պատկերներ թյուրքահայերի կյանքից» պատմվածքների գիրքը: Նա այդտեղ պատկերում էր հայ ժողովրդի ծանր կյանքը թյուրք, քուրդ և հայ հարստահարիչների լծի տակ: «Տուրիստի հիշողություններից» ակնարկներում Փափազյանը ցույց է տալիս, որ բոլոր ազգերի մեջ էլ կան աղքատներ ու հարուստներ, և որ աղքատները հարուստների զոհերն են:

«Պատկերներ գյուղից» ակնարկաշարում և «Ժայռ» վեպում Փափազյանը հրաշալի է նկարագրել հայ գյուղը, հողազուրկ գյուղացուն, որը ենթարկվում է դաժան կեղեքման գյուղի վաշխառուների և ցարի աստիճանավորների կողմից: Փափազյանի կարծիքով հողը աշխատավորինն է: Կգան օրեր, երբ այդ հողը իրոք կպատկանի իր սեփական տիրոջը՝ գյուղացուն:

Փափազյանը գրել է վեպեր, պատմվածքներ, հեքիաթներ, ակնարկներ, հայ գրականության պատմություն:

ԳԻՆԸ 2 Ռ.



Վ. Ի. ԼԵ՛ՆԻ՛ՆԻ արձանը Լենինականում։

Ֆոտո՝ Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ